ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԶ.

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ
# "ԳԱՄԱԳՏԱԿԱՆԻ"
## ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄ

---

ԵՐԿԱՍԻՐԵԱՑ

Հ. ԳԱԲՐԻԷԼ Ծ. Վ. ՄԵՆԵՎԻՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1912.

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

## «ԳԱՄԱԳՏԱԿԱՆԻ»

## ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄԸ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԶ.

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

## "ԳԱՄԱԳՏԱԿԱՆԻ"

## ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1912.

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

## "ԳԱՄԱԳՏԱԿԱՆԻ,,

## ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄԸ

---

ԵՐԿԱՍԻՐԵԱՑ

Հ. ԳԱԲՐԻԷԼ Ծ. Վ. ՄԷՆԷՎԻՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1912.

## ՆՈՅՆ ՀԵՂԻՆԱԿԻՆ ՀՐԱՏԱՐԱԿԱԾ ԳՐՔԵՐԸ

1. Faustus von Byzanz und Dr. Lauer's Deutsche Uebersetzung. *Արտատ.* WZKM. 1889. *էջ* 18. *Գին՝* —.—.
2. *Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց, 1890: 8° էջ 50: 8 պատկերներով եւ 1 տոհմագրական տախտակով: Թղթկ. Գին՝ Փր. 1.–:*
3. *Խաչ ու ծերիկ (պտմկն. վէպ) Թարգմանութիւն. 1890: 8° էջ 245: Թղթկ. Գին՝ Փր. 1.75:*
4. *Կենսագրական ակնարկ Գեր. Արսէն Այտնեանի, 1895: 8° էջ 46: 4 պատկ.: Թղթկ. Գին՝ Փր. 1.–:*
5. *Աբգարու զրոյցը Մովսէս Խոր. Պատմ. մէջ Կարրիէր. Թարգմանութիւն, 1897: 8° էջ ժգ+107: Թղթկ. Գին՝ Փր. 1.90:*
6. *Պատկերազարդ Բնկ. Պատմութիւն Կենդանաբանութիւն, 1897: 480 պտկ. մեծ 8° էջ ժբ+344: Թղթկ. Գին՝ Փր. 3.90:*
7. *Պատկերազարդ Բնկ. Պատմութիւն Բուսաբանութիւն, 1897: 237 պտկ. մեծ 8° էջ ժգ+364: Թղթկ. Գին՝ Փր. 3.90:*
8. *Պատկերազարդ Բնկ. Պատմութիւն Հանքաբանութիւն, 1897: 82 պտկ. 8° էջ 140: Գին՝ Փր. 1.75:*
9. *Գիրք կամ յօդուած գրելու արուեստը: Նորուս հեղինակներու ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ. 1898: 8° էջ է+123: Թղթկ. Գին՝ Փր. 1.25.*
10. *Հայերէն բարբառախօսութիւն, Մսերեանց, թարգմանութիւն (ռուսերէնէ) 1899: 8° էջ է+26: Թղթկ. Գին՝ Փր. –.50:*
11. *Արդի լեզուագիտութիւն Ա. հտ. 1903: 8° էջ ը+204: Թղթկ. Գին՝ Փր. 3.–:*
12. *Ոսկեդարեան հայերէնի խնդիրը (Թաթուլ Վանանդացի). 1903: 8° էջ 32: Թղթկ. Գին՝ Փր. 1.—:*
13. *Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը, 1910: 8° էջ 73: Թղթկ. Գին՝ Փր. 1.–:*
14. *Գրիգորի Մագիստրոսի Գամագտականի ամբողջական լուծումը: 1912, 8° էջ ժա+162: Թղթկ. Գին՝ Փր. 1.50:*
15. *Արդի հայերէնի անցեալը, ներկան ու ապագան. Արտատ. “Յուշարձանէն„ մեծ 4° էջ 17: Գին՝ 1.—:*

---

Վիեննա, 1 Յունուար 1912:

Մեծանուն Բժշկապետ

Թ. Ա. ՉԱՔԱՐԵԱՆ

ի Բագու:

Գրիգոր Մագիստրոսի հետաքրքրական մէկ նամակին հետեւեալ հրատարակութիւնը՝ երբ որոշեցի՝ Ձեր անուան նուիրել, միտքս էր կերպով մը՝ յանձին ժամանակակից Բժշկապետի մը, կենդանացնել Մագիստրոսի՝ իբր բժիշկ, ալ ունեցած խորին հմտութեան՝ պատշաճաւոր յարգանքս: Ինչպէս ուսումնասիրութեանս ընթացքին մէջ առիթ ունեցայ բազմիցս՝ այս աննման անձին գերազանց կարողութեանց վրայ ընթերցողներու ուշադրութիւնն հրաւիրելու, այսպէս եւս՝ գրքոյկս Բժշկապետիդ նուիրելու առթիւ, անգամ՛ մըն ալ կրկնել կ՚ուզեմ, թէ այս ծօնս ըլլայ թող ինը դար ետքը նուիրուած հիացական յարգանք մը, բժշկական ճարտարութեան մէջ փայլող-

ներու ընդհանրապէս, եւ Գր. Մագիստրոսի եւ Բժշկապետին ի մասնաւորի: — — —

Թէ Գր. Մագիստրոս բժիշկ էր ի պաշտօնէ, իւր գրուածքէն չի կրնար հետեւցուիլ. բայց թէ բժշկական ճարտարութեան նկատմամբ խորին հմտութիւն ունէր՝ իւր գրուածքներուն մէն մի էջը կը վկայէ: Եւ այս հմտութիւնն ի հանդէս կը բերէ մարդակազմութեան եւ ախտաբանութեանց վրայ ունեցած տեղեկութիւններովը: Բաւական է կարդալ՝ Պր. Կոստանեանցի հրատարակութեան ԽԸ. նամակը, ուր Գաղիանոս եւ Միսալիոս եւ այլք կը յանձնարարուին իբր մարդակազմութեան եւ բժշկականութեան վրայ խօսող տիպարներ: Մագիստրոսի խորին հմտութեան ապացոյցներն ի բժշկականին՝ արդիւնք են իւր շատ մը գրքեր կարդացած ու թարգմանած ըլլալուն, բայց ի մասնաւորի թարգմանելով Պղատոնի իմաստասիրի . . . Տիմէոսը, որուն հմուտ բժիշկ հանդիսանալն ի յայտ կու գայ Տիմէոսի գործին 150դ էջին վրայ: — —

Համոզուած եմ որ Մագիստրոս մը Միջին դարու մեր մատենագրութեան պատմութեան մէջ չունի իւր նմանը: Կան

իրմէ ետքը շատ մը բժիշկներ (բաւական է կարդալ Մ. Հերացին, Ամիրտովլաթն, Վաստակոց գիրքը եւն), բայց իբր հայ բժիշկ՝ որ զուտ հայերէն գրէ, Մագիստրոս ունի առաւելութիւն մը. իր ընիկ հայ բառերը չի փոխանակեր իր հետեւորդներու պէս՝ արաբերէն, պարսկերէն, նոյն իսկ տաճիկ բառերով: Քիչ գրած է՝ համեմատաբար վերոյիշեալ բժիշկներու (որովհետեւ առանձին բժշկական գիրք մը չի յիշատակուիր Մագիստրոսի անուամբ), բայց գրածն՝ հմտալից, հայեցի, եւ դիւրիմաստ է: —

Այս բանագէտ Մագիստրոսին յատկութիւններն յառաջ բերել չէ միտքս այլ իր նամակներէն՝ — որոնց անլուծանելի առեղծուածներէն մին լուծելու ձեռնարկած էի, եւ ահա իբր հատորիկ մը կը ծօնեմ զայն Բժշկապետ բարեկամիդ, — պիտի հետեւցնեմ ոճը, այսինքն գրելու եղանակը, եւ ոճէն պիտի ուրուագծեմ Մագիստրոսի բնաւորութիւնը: "Ոճէն գրողը ճանչնալ,, երեւակայութիւն մը չէ, այլ le style c'est l'homme խօսքին հաստատութիւնն է:

Ուրեմն եթէ իր գրածներէն բժշկականութեան ճարտարութեան հմուտ մէկը

կրցանք հաստատել զՄագիստրոս, պիտի չքաշուինք իբրեւ ճշմարիտ ազգասէր մը ներկայացնելու զինքը. բաւական է կարդալ Մ՚Կս. 115 էջը: Իր ոճը կը մատնէ զինքը իբր հեզահամբոյր բանաստեղծ մը, որ գիտէ գրել բանաստեղծութիւններ, կ՚երգէ ձկերը, կաղնին, խնձորը, հազարը: Այս նկատմամբ բաւական է համեմատել ինչ որ ըսած ենք այս ներկայ գործոյս 14րդ էջին մէջ: Սաստիկ յարում մը ցոյց կու տայ այլաբանութեանց ու դիւցաբանական զրոյցներու, որոնցմով կը համեմէ՝ թերեւս քիչ մը չափազանցութեամբ, իւր երկերը: Գիտէ իւր զուարճախօսութեամբը (տ. Նամակ 74, էջ 213) հաւանեցնելու ջանալ իւր խօսակիցները կամ թղթակիցները. գիտէ իբր հեզահամբոյր ու խոհեմ վշտակիր մը՝ պատմել սրտաճմլիկ իւր քաշածները եւ իբր համբերատար դիւցազ մը արհամարհել նեղութիւնները (էջ 139—140):

Բայց այս հեզաբարոյ Մագիստրոսն ինչ հրեղէն լեզու կը գործածէ իւր հայրենեաց ու կրօնին թշնամեացը դէմ (էջ 164): Անհնարին կ՚ըլլայ ճանչնալ զինքը երբ հեգնաբերու միջամուխ ըլլայ, եւ շատ մը նամակներէն աւելի՝ մեր լուծելու ձեռ-

նարկած նամակն ամենայարմար օրինակը կը մատակարարէ ի հաստատութիւն այս մեր ըսածին:

Կ'երեւակայեմ զՄագիստրոս — եւ այս պատկերը միշտ կ'արձանանար մտացս առջեւ իր գրուածներն ու թարգմանութիւնները կարդալու ատեն — իբրեւ կարճահասակ, դիւրաթեք, քաղցրախօս ու քաղցրաբարոյ հայր մը. իբր զինուորական մը՝ որ սակայն սրէ աւելի գրիչը կը սիրէ. իբր խնամարկու ու հոգատար իշխանազուն մը, որ մարմնոյ դիւրակեցութեան ու բարօրութեան հետ՝ ջան ու ճիգ չի խնայեր իր ստորադասեալց մտաւոր ու նիւթական զարգացման:

Դժուարին է պարզախօս հայերէնագէտ մը համարիլ զՄագիստրոս, այլ՝ իբր հենգնող մը՝ միշտ կը միտէ աւելաբանութիւններով, խրթին ու մռայլ առասութիւններով տեսակ մը բարձրութեան վրայ մնալ՝ հանդէպ իր թղթակցին: Եթէ այս կերպ գրողին գրչութեան վրայ աւելցնենք՝ այն ժամանակի ոգին — նմանաձայնութեամբ (Allitération) նոյն իսկ ամենապարզ ասացուածն համեմելու ճիգը, այն ատեն կը կանգնի մեր առջեւ Մագիստրոս իբր

հայկաքան աշխարհական մը, որ եթէ ոչ առաջինը՝ գոնէ առաջիններէն մէկը պիտի նկատեն զինքը դարեր ու դարեր: Այս նմանածայնութեանց վրայ ուշադրութիւնն հրաւիրեցինք ընթերցողներուն՝ գործոյս ընթացքին մէջ. իսկ աւելաբանութիւններուն (pléonasme) համար՝ օրինակ մը միայն պիտի հաստատէ մեր միտքը: "Զքաղցրութիւն անձկութեան տենչանաց քոց եւ զփափաք ցանկութեան տոփանաց, որ խանդակաթ ըղձմամբք յաւէժ տողորէր. պարզմամբ կարօտեալ նախուստն քո հայրենի աւանդութեան հետեւել„ (Մկս. էջ 222): Մի միակ "փափաքիլ„ բառին տեղ՝ տաանումէկ բառով դարձուածով մը զարդարել նախադասութիւնը՝ եթէ այսօր մեզի համար աններելի շռայլութիւն կը համարուի՝ 1059ին վախճանած Մագիստրոսին՝ գրական պարծանք կը թուէր:

— — — — — — — —

Եթէ՝ ինչպէս հաստատ համոզուած եմ, այս ծոնս պիտի վիրաւորէ Ձեր համեստութիւնն, իբր գրական Մեկենաս մը հանդիսանալու, սակայն ինծի համար պի-

տի ըլլայ այն՝ մեծարանաց հաւաստիք մը որով ուզեցի մշտնջենաւորել անկեղծ համակրանքս, զոր կը տածեմ միշտ, Բժշկապետ բարեկամիդ հանդէպ:

Եթէ այս փոքրիկ, բայց ըստ բաւականի չարատանջ երկասիրութիւնս պիտի կարենայ ուրիշներուն ալ ճաշակը զարթուցանել, մեր նախնեաց գանձերն յարեւու ցուցադրելու, վարձատրուած պիտի զգամ ինք զինքն այս տողերս գրողը, այն հրճուանօք թէ կրցաւ իննդարեան հանելուկ մը լուծել եւ ձօնել գրասէր Բժշկապետի մը, որուն կարօտագին ողջունիւ կը մնամ միշտ երախտապարտ՝

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ "ԳԱՄԱԳՏԱԿԱՆԻ" ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄԸ

Հայկական հին մատենագրութիւնն՝ իւր այլեւայլ ժամանակաշրջաններու համեմատ, զանազան շահագրգռական երեւոյթներ կը ներկայացնէ բանասէրներու։ Անգիր ժամանակներն ունին իրենց երգերու մնացորդները. Հինգերորդ դարը մեր առջեւ կը հանէ իւր ոսկէ գոյնը, կատարեալ կազմակերպուած, ձեւընտիր լեզու մը, քերականօրէն անսգիւտ, միօրինակեալ, բազմաձեւութեանը մէջ դիւրըմբռնելի, վերջապէս դասական լեզուէ մը պահանջուած կանոնաւորութեամբն ու միօրինակութեամբը, մի միակ հետեւելի լեզուն։ Ունի միայն թերութիւն մը, որ իւրը չէ՛, այլ ժամանակի կարճութեանը։ Թարգմանածոյ դպրութիւն մը ստեղծեց, շատ ցանցառ՝ ինքնուրոյն, իսկատիպ հայերէն երկեր ունեցաւ։

Թող ըսեն այլք ինչ որ ուզեն, բայց մեզի համար անլուծանելի հանգոյց մը, մանաւանդ թէ կնճիռ մըն է, թէ ինչպէս 406—450 կարճատեւ, կիսադարեան շրջանի մը մէջ՝ Նորաստեղծ գրերով, Նորակերտ հնչիւններով, Նորուսոյց աշակերտութեամբ՝ այնպիսի ուղղաձեւ,

դասականութեան ամէն առաւելութիւններով օժտուած գրականութիւն մը կը հրամցուի, առանց նախընթաց փուլերէն անցած ըլլալու։ Եթէ անցած է, ո՞ւր են վաւերական ապացոյցներ. եթէ անցած չէ՝ իրաւունք ունինք անըմբռնելի առեղծուածի մը առջեւ գտնելու զմեզ. եւ այսպիսի գրական առեղծուածի մը լուծման՝ շատ քիչ ուշադրութիւն նուիրուած է ցայժմ։ Գոնէ ազգայ գրականութեան պատմութեան մէջ՝ եզական երեւոյթ մըն է, “առանց գիր ճանչնալու յանկարծ հատորներ գրելու„ չափ հրաշալի...։

Արծաթի դարը՝ զոր կ'ըմբռնենք Զ—Ը դար եղած ժամանակամիջոցին մէջ, ունի իւր շահեկան կողմերը՝ լեզուակազմութեան տեսակէտով։ Բայց առ այժմ այս ալ դուրս կը մնայ մեր քննութենէն։

Պղնձէ դարը՝ Ը—ԺԱ դարու գրականութիւնը, առաւելապէս կը չեշտուի՝ իբրեւ միջանկեալ դարերու յունական լեզուի ազդեցութեամբը կերպաւորուած հայերէն մը, որուն գլխաւոր ներկայացուցիչներէն մին՝ այս անգամ մեզի քննութեան նիւթ կը մատակարարէ, եւ է՝ **Գրիգոր Մագիստրոս**[1]։

Պիտի չսխալինք եթէ՝ “ծովածաւալ հմտութեամբ„ գիտնական հայ մը անուանենք զՄա-

[1] Հայերէն լեզուի ժամանակին բաժանման համար համեմատել՝ ի մէջ այլոց, մեր “**Արդի Լեզուագիտութիւնը**„ Վիեննա, 1903, էջ 116—128. Նոյնպէս մեր՝ “Ոսկեդարեան Հայերէնի խնդիրը„ Վիեն. 1903։

գիստրոս, որ կը վկայէ իւր անձին համար, թէ կարդացած ու թարգմանած է իւր ձեռքն անցած ամէն գիրք, եւ իւր ծերութեան մէջ իսկ զբաղած է՝ հայ գրականութեան գանձը նորանոր գրութիւններով ճոխացնելու (Մագ. Թղթ. Կոստ. էջ 66)։ Նոյնպէս պիտի չսխալինք՝ 7րդ դարու Անանիա Շիրակացւոյն նման “գիտնական„ անունը տալու Մագիստրոսին ալ, իբր իւր ժամանակին ամէնահմուտ եւ բանիբուն գրողներէն միոյն[1]։

Բայց Մագիստրոսի անձին եւ ուսման վրայ ուսումնասիրութիւն մը գրել չէ մեր նպատակը, այլ մեր խորհրդածութեանց նիւթ պիտի մատակարարէ Գր. Մագիստրոս ուրիշ տեսակէտով։ —

Պր. Կ. Կոստանեանց՝ մեր գրագէտ բարեկամը, մեծ ծառայութիւն մը մատոյց հայ գրականութեան՝ հրատարակելով անցեալ տարի՝ Գր. Մագիստրոսի ծանօթ նամակները։ 1869ին արդէն V. Langlois փափաք կը յայտնէր որ այս “կարեւոր նամակաց հաւաքածոն... տպագրուէր„ (տ. Առջ, էջ 60)։

Այս նամակներէն քանի մը հատը հրատարակուած էր Մսերեանի, Էմինի, “Հանդէս Ամսօրեայի„, “Բազմավէպի„, “Բանասէրի„,

---

1 Ահա թէ ինչպէս կ'որակէ զինքը Victor Langlois՝ նամակներէն դատելով զինքը. „Chacune de ses lettres renferme en effet des détails curieux sur les sujets les plus divers, et l'on ne saurait mieux qualifier notre auteur qu'en lui donnant le titre d'encyclopédiste„ Ext. Nr. 3, Journ. Asiat. 1869, էջ 3։

"Հանդէս Հայագիտութեան„ եւն միջոցաւ (տ. մանրամասն տեղեկութիւններ այս մասին Պր. Կոստ.ի հրատարակութեան մէջ, էջ 247—8)։ Բայց ամբողջական նամականերու՝ այսպէս ըսենք՝ Մագիստրոսական Գիրք Թղթոցը ահա՛ կատարեց Պր. Կ. Կոստանեանց։ Խօսուած է այս հրատարակութեան վրայ՝ ի մէջ այլոց "Հնդ. Ամսօրեայի„ 1910 (էջ 125—27) եւ "Բազմավէպի„ մէջ 1910, (էջ 314) եւ 1911 Յունուար, (էջ 45—48[1])։

---

1 Բայց կ'երեւայ թէ այս վերջին քննադատը ժամանակ ունեցած չէ՝ քիչ մը աւելի խորաթափանց աչքով նայելու Մագիստրոսի վրայ, որովհետեւ իւր "Ծաղրական չեշտովը„ շատ կը նուաստացնէ զՄագիստրոս. եւ պարզ "ցուցադրող„ այսինքն "ցուցամոլ„ մը ցոյց կու տայ զինքը։ Le style c'est l'homme եթէ ճշմարիտ է, պատճառ մը չունինք զՄագիստրոս "ցուցամոլ„ անուանելու։ Քաջ ուսեալ զինուորականի մը միտքը չէր կրնար տգէտ վարժապետի մը գրիչը գործածել։ Լեզուին խրթնութիւնն իսկ անոր բնութեան մէկ յայտարար նշանն է։ Թող Մագիստրոսի պէս 5 հեղինակ ունենայինք, եւ զինքը չհաւնողին կը պարգեւէինք ի փոխարէն 50 վարժապետներ։ Մենք կը հիանանք՝ — եւ մեզի հետ ցայժմ մեզմէ յառաջ գրողներ —, Մագիստրոսի մտքին վրայ, եւ քննադատ մը կ'ելլէ պարզապէս թջնամանել այսպիսի մատենագիր մը։ Մեր պաշտօնակցին՝ կ'երեւայ շատ երիտասարդ խմբագիրը, անտեսած կը թուի իրմէ յառաջ գրողներու խօսքերը։ Ահա՛ թէ՝ ի մէջ այլոց, ինչպէս կ'որակէ զՄագիստրոս՝ Առ. Լաստ. էջ 41–2։

"Գրիգոր որդի քաջին Վասակայ, ելեալ եւ գնաց առաջի Թագաւորին. քանզի այր իմաստուն էր եւ խելամուտ յոյժ աստուածային գրոց, ՈՐՊԷՍ ԹԷ Ո՛Չ ԱՅԼ ՈՔ... եւ մեծարեալ ի նմանէ առնու զպատիւ մագիստրոսութեան„ եւն։

Աւելցուր ասոր վրայ Ներսէս Շնորհալւոյ խօսքերը եւ Գր. Մագիստրոսի գիտնական — լուսանկարը՝ ամբողջ գծերով յերեւան կ'ելլէ։

Գր. Մագիստրոսի Նամակներուն մէջ կան այնպիսիներ [մանաւանդ չափաբերական Նամակներէն], որոնք յունաբանութեամբ գրուած են, եւ կան ոմանք, որոնք թէեւ յունարէն չեն, բայց հայերէն ալ չեն կրնար համարուիլ, գոնէ հայ բանասէրներու բոլոր գրաբարագիտութեամբն ու աշխարհաբարագիտութեամբն ամբողջովին չեն կրնար մեկնուիլ, այնչափ խրթին ու դժուարիմաց են[1]։ Ասոնց մէջ գլխաւոր տեղը կը գրաւէ "Գամափական„ ըսուածն, որ Պր. Կոստ.ի հրատարակութեան մէջ ՁԷ (= 87րդ) է։

Այս չափաբերական Նամակն՝ Պր. Կոստ.ի եւ Էմինի հրատարակութեանց մէջ, ուղղուած է "Առ հեղգս յուսումն իմաստից„ (էջ 238[2]), իսկ Վիեն. Մատեն. 27րդ ձեռագրին մէջ, Պր.

---

"Ցոյժ իմաստուն եւ հանճարեղ եւ ներքին եւ արտաքին ուսմամբ ներակրթեալ վարժմամբ ի մանկական տիոց... եւ պատուեալ յինքնակալէն եւ ի մեծամեծաց պալատանն՝ ըստ արժանեաց քաջատոհմութեանն ԵՒ ԸՍՏ ՄԵԾԻՄԱՍՏ ԳԻՏՈՒԹԵԱՆՆ ԵՒ ՀԱՆՃԱՐՈՅՆ„ Տես Հ. Գար. Վ. Զարբհանէլեան "Հայկական հին դպրութիւն„ 3 Տպ. ի Վենետիկ, էջ 575։

1 "Այս անձին [Մագիստրոսի] արդիւնքը պէտք է անմոռաց պահուի հայ մատենագրութեան մէջ, ո՛չ թէ իւր անիմանալի լեզուաւ գրած տանաւորներուն համար, այլ հայ մատենագրութեան մէջ իւր իրաւամբ աննման նամակներուն պատճառաւ„ Տես Սա. Կալիսթ. ուսումնասիրութիւն, Հ. Յ. Տաշեան, Վիեն. 1892, էջ 28։

2 Կը զարմանանք թէ Պր. Կոստ. ինչպէս կրցած է էջ 305 ըսել թէ Թղթի ճակատը գրեթէ ամէն տեղ "Առ հեղգս յուսումն իմաստից„ է նշանակուած։ "Բանասէրն„ գոնէ տեսած ըլլալու է։ Մեզի ծանօթ 5 ձեռագիրներէն միայն 2ին մէջ այսպէս է։

Նորայրի՝ "Բանասէրի" մէջ 1900ին հրատարակած ուսումնասիրեալ բնագրին, նոյնպէս Անտոնեան Հարց[1] ձեռագրին մէջ կը կրէ այս տիտղոսը. "Բան խմաստաէրական, զոր ատացէալ է մեծի քէլյաատայէն Գրէգորի Մագէստրոսի պալհաաաանայ յէար անաան" (կ'ուզէ ըսել էար անաան վրայ կը դառնայ այս Նամակը)։

Ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք, այս Նամակն ուղղուած է "Սէրակէա յայն պտղէ" հասցէին (Մագ. Կոստ. էջ 109, իսկ Վիեն. ձեռ. էջ 128)։

Արդ այս Նամակն իբր "հանելուկ" մը, իբր "անհասկանալի գրուած" մը նկատուած տարիներէ ի վեր, բախտն ունեցաւ առարկայ դառնալու Պր. Նորայրի ուշադրութեան, որ՝ ինչպէս ինքը կը պատմէ, առաջին անգամ ինքն ալ քաշուած չէ "անիմանալի" համարելու զայն՝ իրմէ յառաջ այս նիւթիս վրայօք գրողներուն հետ միաձայն (տ. "Բանասէր" անդ). բայց յետոյ յաջողած է՝ այս Նամակին մէկ մասին լուծումը գտնելու՝ նոյն իսկ Մագիստրոսի ձեռօք եղած։

Փութանք ըսել ուրեմն՝ ամբողջական չէ լուծումը։

---

1 Մեր խնդրանօք հաճած է ընդօրինակել յատկապէս այս առթիւ եւ ղրկել մեզի 1910ի վերջերը՝ Վ. Հ. Ի. Վ. Սրապեան, որուն հրապարակաւ մեր շնորհակալութիւնքը։ Նոյնպէս առիթ ունեցանք համեմատելու Միւնխէնի՝ Մելքոնեան օրինակը, զոր յատկապէս՝ այս առթիւ, բերել տուինք Արքունական մատենադարանին երկրորդ տեսչին ազնուութեամբ։

“Գամագտականը„ կազմուած է ծայրանուն = acrostiche երկ– կտորներէ, որոնց սկզբնատառերը կը կազմեն “Գ ր ի գ ո ր Մ ա գ ի ս տ ր [ո] ո ս„ բառերը[1]։ Ամբողջը 15 անհաւասար տուներէ (հատուածիկներէ) կը բաղկանայ։ “Գրիգոր„ բաղկացեալ է 6 տուներէ, զորոնք մեկնած է արդէն ինքն Մագիստրոս, բայց այս մեկնութիւնն անծանօթ էր մնացած ցայժմ՝ ինչպէս իրաւամբ կը դիտէ Պր. Նորայր, բանասէրներէ, եւ ինքն՝ Պր. Նորայր, առաջինն եղաւ որ այս մեկնութիւնը յերեւան հանեց։ Իսկ յաջորդ “Մագիստրոս„ ծայրանունը կապող 9 հատուածիկներուն համար՝ “անյայտ է դեռեւս, կ'ըսէ. հնար է թէ գտնուի եւ այն ի լաւագոյն ձեռագրի„ (Բանասէր„ 120)։

Պր. Կոստանեանց իւր Հրատարակութենէն օրինակ մը նուիրած ըլլալով եւ մեզի, առաջին անգամ սկսանք կարդալ այս յետնադարեան համարուած մատենագիրն ալ՝ բառաքաղ ընե-

---

[1] Անճիշդ տեղեկութիւն մը կու տայ հոս V. Langlois: „Lettre en forme d'acrostiche que Grégoire écrivit sur les diverses syllabes! de son nom, Գրիգոր Մագիստրոս ։ [Մագիստրոս իւր անուան կազմիչ տառերով սկսած է այս նամակը, բայց իւր անուան այլ–այլ վանկերը ընաւ գործ չունին այս նամակին մէջ ։] C'est une pièce complètement illisible et qu'il est impossible de traduire (կը հաւատանք!). Car elle roule entièrement sur des jeux de mots qui n'offrent aucun (հիմայ պիտի կարենանք ըսել offrent un!) sens raisonnable en français,,. Mémoire sur la vie et les écrits du Prince G. M. [ext. d. J. As. զոր յիշեցինք վերը] էջ 28 ։

լու համար։ Երբ այս “Գամագտականին„ հասանք, նախընթաց քանի մը կարճ չափաբերականներու նման, “ծիծաղելի„ երեւցաւ մեզի եւ պարզապէս կարդալով անցանք՝ տեսակ մը ռամկական “Թռչնոց լեզու„ համարելով։ Բայց Պր. Կոստանեանցի ծանօթութեանց մէջ նշանակուած գտնելով Պր. Նորայրի ըրած գիւտը, ինչպէս բնական է՝ հետաքրքրուեցանք. բացինք “Բանասէրը„ եւ վեր ի վերոյ համեմատութիւն մը բաւական եղաւ համոզուելու համար թէ Պր. Նորայր հանած էր Մագիստրոսի ձեռօք զԳրիգոր՝ խաւարէ ի լոյս աշխարհ, անծանօթ բեւեռագրութիւն մը լուծած էր։ Քանի մը կէտերն ի բաց առնելով՝ զորոնք յետոյ պիտի տեսնենք, ընդունելի էին Պր. Նորայրի համառօտ պատճառաբանութիւնները։

Բայց “Հնար է թէ գտնուի եւ այն ի լաւագոյն ձեռագրի„ խօսքը՝ զոր գրած է Պր. Նորայր, յայտնի կը ցուցնէին որ նամակին մնացեալ 9 հատուածներն, անհասկնալի հայերէն մը նկատուած ըլլալով՝ շատ ճարտարօրէն “անմեկնելի„ կը ստորոգուէին՝ նոյն իսկ Պր. Նորայրի կողմանէ, եւ կը յետաձգուէր անոնց մեկնութիւնը — ad calendas graecas. Մենք չուզեցինք այս “լաւագոյն ձեռագրի„ գիւտին սպասել. ուզեցինք մեր հայերէնի ունեցած փանաքի ծանօթութեամբ ոտնարձակ ըլլալ այս խռուացեալ խրթնացեալ թփուտքի մէջ. թափանցել ուզեցինք Մագիստրոսի մտացը՝ եթէ ոչ ամբողջովին եւ ըստ ամենայն մասանց, գոնէ

մասնակի եւ իբր փորձ, մեր քննութեան իբր մանրացոյց առնելով մեր ձեռքը՝ նոյն իսկ Մագիստրոսի ոճն ու բառամթերքը։ Պր. Նորայրի նախագիւտ յայտնութիւնն այս նամակին առաջին մասին լուծմանը, գրգռեց մեր ճաշակը՝ գոնէ Երկրորդէն գտիչ ըլլալու պատիւը մեզի սեպհականելու։ Յաջողեցա՞նք։ — —

Առ այս գլխաւորաբար 3 շարժառիթ ունեցանք։

Նախ՝ Պր. Կոստ.ի էջ 283 մէկ խօսքը. "ՁԵ, ՁԶ եւ ՁԷ (մեր քննութեան առած 87րդը) թղթերը յատկապէս նշանակութիւն ունին Հայոց լեզուի բառարանի համար, նոքա իրենց մէջ պարունակում են հնացած եւ վաղուց գործածութեան մէջ չեղած բառեր, որոնք տաճկերէն հետադարձելի են։,, Ահաւասիկ այս հետադարձելի բառերէն գոնէ քանի մը հատը լուսաւորելու համար՝ ամբողջացնել ուզեցինք — այժմ միայն ''Գամագտական,, նամակին լուծումը։ Եւ իրօք պիտի տեսնեն՝ այսպիսի նիւթերով շահագրգռուող բանասէրք՝ մեր մանրախոյզ խուզարկութեանց մէջ, թէ՝ շատ մը բառեր լուսաբանուեցան, շատերուն ծագումնեան յետն որոշուեցաւ, շատերուն իմաստն ուղղուեցաւ։ Եւ որպէս զի անսայթաք ընթանանք մեր քննութեան մէջ՝ չքաշուեցանք հոն, ուր նոյն իսկ մեզի տարակուսելի կ'երեւային մեր մեկնութիւնները, հարցական նշանով մը՝ հմտագունից ճաշակն — արթնցնելու։ Փութանք ըսելու. քանի մը հարցականներու (7—8) օգնութեամբը

Գրեթէ ամբողջապէս լուծուած կրնան համարուիլ 9 հատուածներն ալ՝ էջը 40 տող:

*Երկրորդ*: Գիւտ մ'ընել յաջողեցաւ մեզի. եւ այս — գրական գիւտը տեղ մը յիշատակուած չէ ցարդ. այս գիւտն է՝ Մագիստրոս հետեւած է յոյն կատակերգակ Արիստոփանէսի[1] գրութեանց, եւ զոր՝ այս "Գամագտական„ին մէջ յանուանէ կը յիշատակէ: Բայց երբ "Հետեւած„ է կ'ըսենք, չենք իմանար թէ ամբողջապէս օրինակած է այս "Գամագտականը„ Արիստոփանէսէն (որուն ծանօթ է ինքը նոյն իսկ Ն–ն––է գրքէն էջ 62), այլ գրելու կերպը, դէզադէզ բառեր շեղջակուտելը, բառերու "երկդիմի„ նշանակութիւնները, գրութեան դարձուածքներն եւն կը ձեւէ Արիստոփանէսին կաղապարին վրայ: Ստոյգ է, Մագիստրոս չունի այս յոյն կատակերգակին գրչէն ելած 1, 2 նոյն իսկ 3 (կարճ) տողէ բաղկացեալ երկայն բառեր, որոնք ամբողջ նախադասութիւններ կը պարունակեն, բայց ունի այս կատակերգակին բառախաղերը:

Երկու փոքրիկ նմոյշներ կրնան գաղափար մը տալ. ազատ կը թարգմանենք Արիստոփանէսի "Հաւեր„ կատակերգութենէն (Ա. Արար. 6դ տեսիլ).

---

[1] Յունարէն՝ Ἀριστοφάνης, Քրիստոսէ յառաջ 450ին ծնած ամենէն երեւելի յոյն կատակերգակը: Մեզի հասած կատակերգութիւնները կարդալու է մարդ՝ սրամտութիւն, երգիծանք, բառախաղ, բառակոյտ, կանդնաչափ երկայն բառեր կերտելու արուեստը սորվելու համար:

“Օ՜ն ի մարտ, փո՜յթ, կտո՜ւցն ի գործ, մի՜ տատամսիր,
Ցտէ՜, կռուէ՜, կոցէ՜, կեղէ՜, զա՜րկ խեցին նախ երկուքի։”

Չի՞ յիշեցներ Մագիստրոսի՝ “ծրդեալ, ծեքեալ, անհոյծ ոգեալ, յառեալ”ը. կամ... “խանրեալ, մանրեալ, յարազինեալ, իսկոյն յահրեալ” (էջ 237) բառակոյտը։

Բայց Կիրակոսի եւ Մագիստրոսի մրցութիւնն աւելի լաւ կը պատկերացնէ Արիստոփանէսի “Գորտեր” կատակերգութեան Դ. Արար. 2դ տեսիլը, ուր Եւրիպիդէս եւ Էսկիւղոս (մենք պիտի ըսէինք՝ Կիրակոս եւ Մագիստրոս)՝ բանաստեղծութեան մրցանակն իրարմէ յափշտակել կը ճգնին՝ Դիոնիսիոսի առջեւ. այս դարբնուած երկարաձիգ “բառերու — ամպրոպայոյզքին” առջեւ աշակերտ կը մնայ դեռ Մագիստրոս։

Կ՚ըսէ Եւրիպիդէս (Էսկիւղոսի համար).

“Ես զինքը լաւ ճանչնամ, արդէն թափանցած իւր ներքնոյն,
Գաղանաստեղծիչ մըն է, հպարտաբան դունչ մը,
Բերան մ՚ունի՝ սանձէ, կոպանէ, փականքէ թափուր,
Հսկայ շաղփաղփ մը, ամբարտաւանածամախօսաբան՜...

Էսկիւղոս (Եւրիպիդէսի համար).

Ստուգիւ, ով ագարակադիցուհւոյն[1] որդի դու,
Դուն կը ժտիս ինծի դէմ, դուն աման շաղփաղ-
փութեանց,
Դուն մուրացկանաստեղծ, դուն քրջահաւաքակարկատող,
Արդ տուժես պիտի ծաղրանքներդ„ եւն։

Աւելցուր ասոնց վրայ (ինչպէս վերն ըսինք) 1, 2, 3 եւն տողերով երկայն բառախաղերու ցանկը եւ կը գտնես Մագիստրոսի վարպետը...։

Մագիստրոսի բառերն ու ոճերը քննած ատեն պիտի անդրադառնանք հարեւանցի իսկ՝ Արիստոփանէսի այն դարձուածքներուն վրայ, որոնցմէ ներշնչուած է Մագիստրոս։

Մենք բնաւ չենք զարմանար այս նմանութեանց վրայ։ Յունական ուսմամբ սնեալ Մագիստրոս, “Անյաղթեանց„ յունատիպ լեզուի — դարբնողներուն մէջ՝ քաջ պարագլուխներէն մին կը ներկայանայ։ Երբեմն յունական թարգմանութեանցը մէջ այնպէս բառացի կառչած է իմաստին, որ առանց յունարէնի՝ հայերէն գրածն հասկնալ գրեթէ անհնարին է։ Այս կարգէն կրնայ համարուիլ “Պղատոնի իմաստասիրի Տրամախօսութիւնք, Եւթիփրոն, Պաշտպանութիւն Սոկրատայ եւ Տիմէոս„ (Վենետ. 1877, հրատրկչ. Հ. Ա. Սուքրեան, էջ 1—174)։ “Պղատոնի տրամախօսութիւնք յաղագս օրինաց եւ Մինովս„ (Վենետ. 1890, հրատրկչ. Հ. Գ. Զարբհանէլեան,

---

[1] Անհարկութիւն Եւրիպիդէսի մօրը, որ բանջարավաճառուհի մըն էր։

էջ 1—477)։ Աւելի դիւրահաս հայերէնով մը գրուած են "Տաղաչափութիւնք Գրիգորի Մագիստրոսի Պահլաւունւոյ„ (Վենետ. 1868, էջ 1—94 (էջ 95—99 խրթին)։ Նոյնպէս "Նորագիւտ պատարիկ ի գրոց տաղերաց երկրաչափութեան Եւկլիդեայ„ ("Բզմվպ.„ 1884, էջ 30—34)։

"Քամագտական„ նամակն է հագներգութիւն (հագն. = կատակերգութիւն Առիստ. Գրիչ, էջ 1), բայց Մագիստրոսի չափերով, որոնց մենք՝ կը խոստովանինք, չկրցանք առ այժմ խելք հասցնել. շատ ալ չզբաղեցանք այս խնդրով, որովհետեւ անհրաժեշտ կարեւորութիւն մը չունի նամակին մեկնութեան համար։ Ասդին անդին կարելի եղաւ "մեծավերջեան վեցաչափը„ նկատել, բայց որոշակի հատու վճիռ տալէ կը վախնանք։ Եթէ մեր քննելի առաջին հատածն իսկ քննութեան առնունք, մեր ըսած չափն կերպով մը յերեւան կու գայ, բաց ի 1—2 ոտքերէ. այսպէս.

Մա՛տիր դո՛ւ ա՛ռ
 մա՛կագրո՛ւթիւնս ա՛նմո՛մո՛շա՛կան
Մի՛տ[ե՛]լո՛վ մա՛գո՛յն
 Ե՛ւ զմա՛կ ա՛նկեա՛լ բ՛ր՛ք ա՛ռ մա՛րգ
Ցո՛րո՛ւմ յո՛ւզո՛ւմ յա՛րա՛րհո՛ւն...

Նկատելի են "մակագրութիւն, անմոմոշական, միտելով, յարարհուն„ բառերու չափերը։ Որոշակի եւ վճռաբար այն ատեն կարելի է խօսիլ, երբ վերջնականապէս վերականգնենք

բնագիրն եւ այս տեսակէտով քննենք. առ այժմ "ընդ խաւար խարխափել„ պիտի ըլլար: Տաղաչափութեան մէջ հմտագոյններու ասպարէզ բացուի թերեւս այն ատեն՝ Մագիստրոսի բոլոր տաղաչափութիւններն ալ յաջողապէս մեկնելու:

Ինքը՝ Մագիստրոս, քաջ տաղասաց, տաղաչափ, բայց իւր տաղաչափութեան վարդապետութեան մէջ իսկ՝ խրթնաբան: Էջ 31—33 ունի ոտանաւոր մը որ կրնայ մեկնուիլ 8 կամ 16 ոտքով, եթէ երբեմն առաջին բառին վերջին վանկն երկարելով իբր չորս ոտք նկատենք (այս ըսել կ'ուզէ "շարամանեալ ամանակօք Էրէուրոյէուլ„ ասութեամբը):

"Ողնափայտ սա Քսիւսութրեայ,
Նոր նաւելոց ի բարութեան:
Սա ներկեալ երկորակեան,
կարմրակերտիւ լուսափայլեան:„

Բայց յանգաւոր է այս ոտանաւորը, ուրեմն չենք կրնար չափական նկատել: Արդ տեսէք թէ ինչ վարդապետութիւններ կ'ընէ Մագիստրոս... "Քանզի ոյնք քաջաց է եւ բերէ քաջալորակս այս զկնի բազմամանակացն աւարտեալ մեծավերջութեամբ, վեց անկեամբք յանկաւորեալ քառիւք ձայնաւորօք՝ ոյիւ, Հէ-Նիւ, Եչիւ, ոյբիւ[1]. իսկ երկու բաղաձայնիւք՝ Ըոյիւ, Նոյիւ եւ յօդաւորեալ է Նոյիւ եւ բախեցեալ

---

1 Ըստ Վիենն. ձեռագրի. իսկ Պր. Կոստանեանց ունի "ոյբիւ, Եչիւ.„ այս փոփոխութեան կարեւորութիւնը քիչ մը ետքը կը տեսնենք:

Նոյիւ, բաղառութեամբ [Վրեն.՝ փաղառու-թեամբ] Էչիւ, ոյքիւ եւ վարատմամբ ոյիւ, Հէ-Նիւ, միոյ երկամանակաւ եւ միոյ սըղիւ եւ երկուց ձայնորդաց„ (էջ 33)։ Թերեւս ընթերցողն ալ առաջին տեսութեամբ՝ այս խառնաձայն բառակոյտէն բան մը հասկցած չէ, «Ծէշէ մէշէ դէ», բայց ուշադիր քննութեամբ կը մեկնուի այսպէս. օրինակ առնունք մեր յառաջ բերած երկու տողերը. “Մեր ոտանաւորը՝ ըսել կ՚ուզէ Մագիստրոս, քաջերու կորովութիւն [ոյնք] է, եւ շատ մը ամանակներէն ետքը մեծավերջութեամբ քաջ կ՚ոլորի, վեց անկեամբք = վեց տողերով, վերջացած չորս ձայնաւորներով (օրինակ առնունք՝ բարութեան բառը) ոյիւ, Հէ-Նիւ, Էչիւ, ոյքիւ (= բար--թէ-ն). իսկ երկու բաղաձայններով, Նոյիւ եւ Նոյիւ (= բարուՆեան). յօդաւորեալ [= վերջացած] է Նոյիւ (= բարութեան) եւ բախեցեալ (= կրթնած կամ սկսած) Նոյիւ (= բարուՆեան], բաղառութեամբ՝ [փաղառութեամբ, զոր կը մեկնէ Արիստ. Գրիչ = շրջառութիւն, պատառութիւն] Էչիւ եւ ոյքիւ (այսինքն՝ Ն եւ Ն՝ իրենց մէջ կ՚առնուն էն ու ոը (= բարութէ-ն), եւ վարատմամբ [= դուրս ձգելով] ոյիւ, Հէ-Նիւ (= բար--թեան), մէկ երկամանակով (= բար--թէ-ն) եւ մէկ սղմամբ (= բարո-թեան = միայն Հէ-Նին ձայնը սղելով) եւ երկու երկբարբառներով (= բար--թէ-ն)։„

Մեր գիտցած տաղաչափութեան մէջ այսպիսի՝ գրերու եւ տառերու Նուրբ հաշիւներ

չկան, բայց ինչո՞ւ Մագիստրոս անուանուեր է մեր Գրիգորը...։ Կ'երեւայ թէ ―ւ―ճ―ցէ (ըստ Վիեն. ձեռագրի, իսկ Պր. Կոստ. տպած է էջ 33 "Էճր―յէցէ„) բանաստեղծներ շատ սիրահար էին այսպիսի ճղճիմութեանց, եւ նկատելի է՝ Գրիգոր Մագիստրոս ա՛յս ալ գիտէ։

Եթէ այսչափ խօսեցանք Հարեւանցի՝ Գր. Մագիստրոսի տաղաչափութեան վրայ, պատճառն այն է որ մեր քննելի Նամակը տաղաչափական գրուած մըն է։ Մեր միտքը չէր զՄագիստրոս նկատել իբրեւ տաղաչափ, ապա թէ ոչ պիտի ստիպուէինք երկարաբանել այս քաջ վարպետին վրայ՝ իբր բնապատում, իբր աստեղագէտ, իբր բժիշկ, իբր զինուորական, իբր փիլիսոփայ, իբր աստուածաբան, եւ ի վեր քան զամենայն՝ իբր աստուածապաշտ ազգասէր մը։

Երրորդ շարժառիթն է այն պարագան, որ ուզեցինք խաւարին մթութենէ ի լոյս հանել երկու ձեռագիր բառագիրքեր, որոնցմէ մէյ մէկ օրինակ ունինք մեր մատենադարանին մէջ։ Առաջինն է ընտրելագոյնը (մեր մատենադ. Թիւ 337. Ցուցակ, Հ. Յ. Տաշեան) "զոր արարեալ է մեծ վարդապետին Վարդանայ ի խնդրոյ Թագաւորին Հայոց Հեթմոյ (էջ 5). ունի 3 մաս, առաջինը՝ քերականութիւն, երկրորդը կը մեկնէ՝ Արիստ. Գրչի բառահաւաքոյթը "յօրէն(ս) եւ ի մարգարէս եւ ի Նոր կտակարանս թարգմանեալ եւ մեկնեալ յեբրայեցւոցն ի յոյնս։ Եւ ի յունէն ի հա՛յ եւ կարգաւ„ (էջ 137). երրորդը, ընդարձակագոյնը, "Այս բառք քերթողականք,

վասն չափոյ հոմերական տաղիցն։ Վասն զի քերթողական արհեստքն չափաբերական են եւ չափով վարին,, (էջ 159)։

Իսկ երկրորդն է թիւ 41 ձեռագիրն[1], որ բառական ընդօրինակութիւն մըն է տպագիր օրինակէ մը։ Համեմատութեամբ առաջնոյն (Վարդանայ), շատ սխալագիր է, թէպէտ քիչ մ'աւելի ընդարձակ, նոյն իսկ տպագիրը շատ ետ կը մնայ չորէոր բառերու նշանակութեան կողմանէ Վարդանայ բառագրքէն։

Ընդհանրապէս զՄագիստրոս հասկնալու համար այս բառագիրքերն գոնչոյն են։ Թէ Հայկազեան բառագիրքն եւ թէ Ստ. Ռոշքա եւ թէ Պր. Նորայր գործածած են այս բառագիրքերն — մին՝ մէկ հատը միայն, իսկ ոմանք երկուքն ալ։ Պր. Նորայր իւր մեկնած 77 բառե-

---

1 "Ցուցակի,, հեղինակն՝ Հ. Ց. Տաշեան, այս ձեռագրին վրայ խօսած ատեն կը համեմատէ զայն 1728ին ի Կ. Պոլիս տպուած Երեմիա Վ.ի բառագրքին հետ եւ գրչութեան ժամանակին նկատմամբ՝ կը դժուարի մեկնութիւն մը գտնել։ Եւ սակայն շատ դիւրին է մեկնութիւնը։ Մեր ունեցած ձեռագիրն օրինակուած չէ 1728ի տպագրութեան վրայէն, այլ 1698ին "Ի Ցալիկօռնայ քաղաքի,, եղած տպագրութեան վրայէն։ Համեմատեցինք անձամբ, բառ առ բառ նոյն է։ Հետաքրքրական է ճակատը. "Բառ գիրք Հայոց արարեալ ի Սուրբ Էջմիածին Երեմիայ Վարդապետէ։ Եւ ես Սարգիս Եպիսկոպոս աշխատասիրեալ, եւ զքառս աստուածաշունչ գրոցն ընդ սմա միաւորեալ. Որ եւ ընթերցողացն Աստուածաշունչ գրոց բաւական է լիով. տպագրեցաւ ի Հայրապետութեանն Տեառն Նահապետի Կաթուղիկոսի ամենից Հայոց։ Ի Ցալիկօռնայ քաղաքի։ Ի Թվականութեանս Հայոց ռճխէ, յունիս ժ. եւ ի թվին Փրկչին 1698. յունիսի ժ։,,





րուն դժուարագոյնները 44—5 հատ, ըստ մասին գտած է “Ցաղթող„ Նամակի մեկնութեան մէջ, եւ ըստ մասին այս բառագրոց մէջ, բայց որչափ կրցանք գուշակել, ո՛չ ուղղակի, այլ Հայկազեանի միջնորդութեամբ։ Եւ բնականն ալ այս էր արդէն։ Սակայն “Դոյզն ինչ օժանդակեալ ի քերթողական բառից Արիս. Գրչի„ (“Բանասէր„ 124) ասութենէն կը վախնանք թէ այս բառագրոց կարեւորութիւնը նսեմանայ։ Ընդհակառակն, մենք չենք քաշուիր ըսելու թէ՝ մանաւանդ “Գամագտական„ին երկրորդ մը քննելի մասին համար՝ շատ մեծ կարեւորութիւն ունին այս բառագիրքերը։ Պիտի ըսէինք նոյն իսկ աւելին. եթէ պակսէին այս բառագիրքերն, ստուգիւ անմեկնելի պիտի մնային “Գամագտական„ին շատ մը բառերը։ — Վկայութեան կոչած ատեն առաջինը պիտի համառօտագրենք ԱԳր. = Արիստակէս Գրիչ. իսկ երկրորդը՝ ձեռագիր կամ տպագիր (1698ինը) պիտի նշակենք՝ Երմ. = Երեմիա Վարդապետ։

Նոյնպէս հոս դիտել կու տանք որ Պր. Նորայր ըսած ատեն պէտք է հասկնալ “Բանասէր„ի 1900 թուին մէջ տպած ուսումնասիրութիւնը, պիտի համառօտենք՝ ՆԲ = Նորայր ի “Բանասիրի„։ Պր. Կ. Կոստանեանցի հրատարակութիւնը պիտի նշանակենք ՄԿս = Մագիստրոս՝ Կոստանեանցի հրատարակութիւն. Էմ. = Էմինեան. Անտ. = Անտոնեան Հարց ձեռագրի ընդօրինակութիւնը. Վիեն. = Վիեննական Մխիթարեանց մատենադարանի թիւ 27 Մա-

գիստրոսի ձեռագիրը: ՍՌ. = Ստեփան Ռոշքայի ընդարձակ ձեռագիր բառագիրքը, մեր մատեն. թիւ 6. ՀԲռ. = Հայկազեան բառագիրքն երկհատոր: Ի մատենագրութենէ էջահամարով յառաջ բերուած օրինակները մեր անձնական հաւաքածոյքէն են, թէպէտ գտնուին անոնք երբեմն ՀԲռ.ի մէջ ալ. իսկ ուր որ իջահամար չենք նշանակեր՝ նշան է թէ ՀԲռ.ի դիմած ենք: — —

Գրիգոր Մագիստրոսի այս Նամակին լուծմանը չմիրճած, ներուի մեզի դիտողութիւն մը: Որչափ կարեւոր ծառայութիւն մատոյց հայ դպրութեան՝ Պր. Կոստանեանց այս իւր հրատարակութեամբը, ա՛յնչափ ալ իւր վրայ կը ծանրանայ պարտք մը՝ իւր հրատարակած բնագիրը լաւ մը սրբագրութեան ենթարկելու, նշանակելով ձեռագրաց նոյն իսկ մանր տարբերութիւնները: Շատ բան կայ ճշդելու, թէ՛ հասարակ բառեր, թէ՛ յատուկ անուններ, թէ՛ ամբողջ դարձուածքներ: Իւր գրքին կցած ծանօթութիւններով քանի մը հատն ուղղագրած է, բայց հարիւրապատիկը կը մնայ դեռ սրբագրութեան կարօտ: Թէ մեր քննութիւններն ալ պիտի դիւրացնե՞ն այս սրբագրութիւնը...:

Բացուած է մեր առջեւ այլ եւս ճամբան՝ Մագիստրոսի "Գամագտականը„ ձեռք առնելու: Ահաւասիկ ուրեմն առաջին մասը, զոր բառ առ բառ յառաջ կը բերենք "Բանասէր„ թերթէն, միայն գրութեան կերպը կը փոխենք մեր ընտրած մեթոդին համեմատ, այսինքն առաջին տողը

կը ներկայացնէ Մագիստրոսի բնագիրը, իսկ անոր տակը՝ իբր երկրորդ տող, կը գրենք նոյն Մագիստրոսի մեկնութիւնը։ Թուերով շատ համառօտ յառաջ կը բերենք բառերու նշանակութեանց մեկնութիւնը, զորոնք տուած է Պր. Նորայր։ Ամբողջական լուծման համար հարկ անհրաժեշտ է այս յառաջբերութիւնը. այս մասն ամբողջ մանրամասն ուսումնասիրել ուզողը կը ղրկենք "Բանասէր"ի նոյն թուին։

*Բան իմաստասիրական զոր ասացեալ է մեծի փիլիսոփային՝ Գրիգորի Մագիստրոսի Պահլաւունւոյ յիւր անուն* (Նմկ. ՁԷ. Մկս. էջ 237։)

*Համեմատել մեկնութիւնը "Առ Կիրակոս յոյն դպիր* (Նմկ. ԽԷ. Մկս. էջ 109)։

**1.**

*Գամագտական գեղազանամ*[1] *շնացեալ*[2]
Յաղթող վայելչական ծիծաղ՝

*քեզ յայժմ պատահեալ — * տարի*[3],
քեզ յայժմ պատահեալ [մարտուցեալ] գծի**

*տարակոյս տատանական տրոհել*[4] *զտար-*
տարակուսեալ տատանեմ — զ[բազում]

---

* Երբեմն բնագրին կամ մեկնութեան մէջ տեսնուած գծերը նշան են թէ կամ առաջնոյն կամ վերջնոյն մէջ համապատասխան բառը կը պակսի։

** Համաձայնցնելու համար կարգը փոխեցինք. պիտի ըլլար՝ "պատահեալ քեզ [մարտուցեալ] յայժմ գծի։

*քեղունն կասկածանս՝ տորքանելով*[5] *սեւե-*
օտարական չաչած՝ վարդագետելով —

*ռազոյն*[6] *իմն ածեալ,* — — *լպրծական*
— է մի ածել, [մորեն ձեւի] լուրծող՝

*փայառութեան*[7] — *անկառու-*
ոտից [անհասկանալի է] անկառա-

*ցական վազից անընմթացք* [=*անսիլթեցք?*]
չէլէ գնացից անուղի:

1. Գեղազանամ ձեւը պէտք է պահել. ա. ուրովհետեւ «գեղանամ» հոս անիմաստ է, եւ ՆԲի իբր ապացոյց բերած «Մրգուզի» հատուածին մէջ գեղազանամ ունի թէ Մկս. էջ 236, եւ թէ «Տաղաչափութիւնք» (Վենետ. էջ 96.). բ. բաց ի այս խնդրական տեղերէն այլուր չի յիշուիր այսպիսի բառ մը. գ. թէ ՀԲռ. (որ չի գիտեր «գեղանամ» բառը, բայց շատ առումներով կը յիշէ «գեղազանամ»ը) եւ թէ Ագր. (էջ 174ա) եւ թէ Երմ. (էջ 63) կը յիշեն գեղազան = վայելուչ. եւ դ. չորս վանկով «գեղազանամ» համեմատ է՝ 2րդ, 3րդ, 5րդ տուներու երկրորդ բառին չափին:
2. Շոհանամ = ճեմիմ. ճիշդ է, բայց ճիշդ չէ ապացոյցներէն մէկը, իբր թէ քերթողական բառք միայն Շոհել = Ճոխել նշանակու-

թեամբ կը յիշատակեն. Երմ. կը յիշատակէ բաց ի շոհէլ = ճռռէլէ՝ նաեւ «շոհեցեալ = յաղթեալ. շոհանալ = ճոհճոհանալ, ճոխանալ»: Արդէն գիտենք որ յաղթողին ճեմելը՝ մեր հասարակ ճեմել = քայլելը չէ:

3. Տառ = Գիծ. բայց աւելցնելու ենք (եւ այս չէ մեկնուած) որ երկուքն ալ նամակ, թուղթ կը նշանակեն:

4. Տրոհել = որոշել, զատուցանել, կը յիշուի իբր «որոշել» Երմ.ի մէջ.

5. Տորքանական = վարդապետական նշանակութիւնը կը գտնենք Մկս. էջ 5 «սակս տորքանականին Տրոքոնեայ ասելով», նոյնպէս էջ 134. «տիրապէս տրամադրութեան տորքանականդ ի քէն տօգեալ:» Արդէն մտադիր եղած է ասոնց ՆԲ.

6. Սեւեռագոյն = Պնդագոյնս, հաստատագոյն:

7. Փայառութիւն = Ոտնառութիւն:

8. Անընթացք = Անուղի: Ձեռագրաց «անսիթեցք» ձեւքան գրչութիւնը ուղիղ չենք համարիր, եւ «սիթեցք» իբր «ճամբայ, ուղի» կռահուած բառին հետ ջնջելը լաւագոյն կը կարծենք, ո. անսիթեցք = անընթացք բառերու շատնմանութեանն համար է. նշանակութեան ճշգրիտ համաձայնութեան պատճառաւ, եւ գ. ո՛չ յունարէնի եւ ո՛չ պարսկերէնի մէջ՝ նման հնչմամբ «ուղի» նշանակութեամբ բառին գոյութեան վկայութիւն

չգտնելով, լաւագոյն կը համարինք՝ փոխանակ հարցական մ՚աւելցնելու՝ անգոյ բառը ջնջել։

## 2.

Բաքովական[1] աջառութեամբ փարագրա-
[illegible]

կան պուետեալ տարակացուցանեմ, զի
[illegible], զի

տարփացիս տարախորհ. քանզի ղտրա-
[illegible] անգիտաբար, քանզի [illegible]

մաղատական[2] իմ տախտակ տոգորել[3]
[illegible]

ախորժ խուզման — անխոհի, քանզի
[illegible] եւ [illegible], քանզի

կոպանեալ[4] ծղխնի[5]:
[illegible]

1. Բաքով = զօրաւոր, բաքացեալ = զօրացեալ:
2. Ըստ իմաստին աւելցուած է Նբ. ղն, եւ պէտք է պահել։ Դիտել կու տանք հոս, որ Գ. Մագիստրոսի գրուածքներուն մէջ՝ հայցականը փոխանակ ուղղականի, սովորական երեւոյթ մըն է։

3. Տոգորել = գանձել: Պէտք է ջնջել արագերել ձեւը որ կայ եւ Վիեն.ի մէջ, միւս ձեռագիր ու տպագիրներն ունին տոգորել, որուն գանձել, «մթերել» նշանակութիւնը շատ դժուարին չէ գուշակել: Եւ պէտք է կերպով մը միայն «տոգորել» ենթադրել հոս. տես պատճառը (10 հատ. 4 թիւ):

4. «Կոպանեալ» բառին համար Պր. Նորայր «Ոսկեդարու» բառ է կ'ըսէ: Մեր գիտցած ոսկեդարը՝ այսպիսի «կոպան»ներէ, «կոպար»ներէ ազատ է: Վեցօր.ի մէջ էջ 66, տեսնուած «կոպնեալ» ձեւը (որ Անտոն. Հարց ձեռագրին մէջ կոպանեալ է) եթէ յետին գրչաց ներմուծում չէ, պէտք է կարդալ «կապեալ», ինչպէս իմաստն ալ կը պահանջէ. «կցորդեալ կապեալ կան առ միասակարս:»

5. Ծխողնի = շրջի՝ շատ տարակուսելի ձեւի մը փոխարէն պէտք է Երմ.ի «ծղխնիլ = շրջապատիլ» ձեւն ընդունիլ: Այս ձեռագրաց ծխողնի վրիպակ ձեւն յառաջ եկած կ'երեւայ խի եւ ղի տեղափոխութենէն:

3.

Իսկապէս իրաւել եւ իրողնաբար
Տէրապէս խորհել եւ [2][ըստ էրէն]

ժտել՝ ժամարունակ զօշոտէ, զի
[1][է վերայ հասանել] [2][յերաբէ] [1][ոչ կարէ], ղէ

*զեղչեալ զեաեղի. եւ ափու եկն քեզ*
Թաքուցեալ ծածկէ. եւ այժմ հասեալ քեզ

*ելեւիկէն, սակայն ոչ ետեկնեցիս.*
Երկնանք, բայց ոչ ծնցի.

*հարազատ սրտխոնդ երբեմն մեզ պա-*
Ճշմարիտ բանաբանութ [2]երբեմն [1]մեզ ե-

*տահեալ՝ որոնեմ սուղ.*
րեւեալ՝ ընդդամնպէս սահման.

Բառ առ բառ կը համաձայնի այս կտորը, մեկնութեան կարօտ չէ, ի բաց առեալ թերեւս ըջշողէ, որոնա (= որոշ-էն?) բառերը, որոնց նշանակութեան պատասխանատուութիւնը կ'իյնայ Մագիստրոսին: Առաջին տողին չորրորդ բառէն սկսեալ թուանիշերով ետեւյառաջ դրուած բառերն՝ համապատասխան բառերը մեկնելու համար շրջուեցան. ապա թէ ոչ նամակին մէջ այս է կարգը. “ի վերայ հասանել ըստ իւրին ոչ կարէ յիրաւի:„ Համեմատէ՛ “ժտել„ բառին այս նշանակութեանն համար այս նամակին 8 հատուածը, թիւ 9:

## 4.

*Գողրումական զոհաւրէն, ըստ որում*
Կաթողիկեալ աշխարհաւրէն, որպէս

ոգէ Հոմերոս, ի գէմաւն[1] ճեմարանի
ասէ Հոմերոս, ի — տաճարէն

ճմղճելով ճոխառոցեալ ճաճանչաւէտ.
ճշդելով վայելչաբանեալ Նրբագոյն բանիւ.

այլ մեզ մակառ իմիխականն մունչ,
այլ մեզ յայտնի Նորայն բանք,

եւ քեզ մախիզ: — — — —
եւ քեզ անյայտական [եւ կարծիս եւ աներեւակ][2]:

1. Գեմաւն (= գեմօն) = ի միջոց, կ'ըսէ տարակուսանօք: Պիտի առաջարկէինք մենք այս բառին՝ իբրեւ նշանակութիւն՝ "լի,, լցեալ, եթէ անպատճառ պահել կ'ուզենք գէմօն անծանօթ բառը: Բայց լաւագոյն կը համարինք կարդալ դէմօն յն. δῆμος բառէն "ժողովուրդ, բազմութիւն,, եւ այն ատեն կը մեկնուի իբրեւ "ի բազմաց ժողովի,, կամ "առաջի բազմութեան ի ճեմարանի:,,

2. Համեմատութիւնը պահելու համար ստիպուեցանք շարքը փոխել. "կարծիս եւ աներեւակ,, բառերը գրուած են Մագիստրոսի մեկնողական Նամակին մէջ՝ "անյայտական,, բառէն ետքը, որով կարգը կ'ըլլայ "եւ քեզ անյայտական եւ կարծիս եւ աներեւակ Նորայն բանք:,,

## 5.

Ոյնք ըստանձնեալ [եւ] ողջախոհ իմ[1]
Զօրութիւն իմ եւ — —

ուղփագունեալ[2], պատ առեցեալ[3] յԾ-
Լոյս երեւեալ, օգնութեան ընկալեալ է

լողէն՝ զատատաղութեան քոյ սթարումն
Հոգւոյն՝ զօրաբանութեան քոյ ծածկոյթ

ցնցուեցից փաղպիական:
անարգելցէց հաւանեալ:

1. Ն. Բ.-ի տուած մեկնութիւնը լուսաւոր չէ։ Մեկնիչ նամակէն՝ որ կ'ըսէ “իմ զօրութիւնս եւ լոյսս երեւելով,„ շատ դիւրին է հասկնալ առաջին տողին համապատասխան բառերն. “ոյնք ըստանձնեալ„ այսինքն “վրաս գտնուած = ուրեմն “իմ„ զօրութիւնս եւ “լուսամտութիւնս„ = ողջ մտածելս երեւելով։ Դժուարութիւնն է միայն “ողջախոհ„ ածականին իբր վերացեալ գոյական առնուած ըլլալը։ Բայց շատ քաջ կրնայ մեկնուիլ եւ “իմ՝ զօրութիւն [զօրաւոր] եւ լոյս երեւեալ„ զօրաւոր եւ լուսամիտ երեւալովս [ըլլալովս], ինչպէս կ'ակնարկէ ալ ընդ աղօտ իմն Ն. Բ.։ Բացարձակապէս ջնջելու է “ողջախոհիմ„ բառը եւ գրելու է զատ զատ “ողջախոհ իմ։„

2. *Ուղփագունեալ* = *լոյս երեւեալ*: Զարմանալի է ԱԳր.ի՝ այս բառին տուած մեկնութիւնը "Ուրփագունել խմս առի մտել" որուն մէջ կը նշմարենք Մագիստրոսի խմը: Ուրփ կը մօտենայ արփ ձեւին. բայց հետաքրքրութեան համար կը յիշատակենք, չենք կրնար Մագիստրոսի լեզուաւ խօսելով՝ "սեւեռագոյնս տորքանել" = պնդագոյնս վարդապետել: Իսկ Երմ. ունի "Ուղփաջունել = լուսադիմել:

3. Երմ. ունի *Պատառայել* = *օգնել*:

**6.**

*Րուճանակ եղանիմ փաստողիղ,*
Ա–էտ–ա–որ ըլլիմ պ–տճ–ա–աբանիչ

*Թերեք զԹրողակութիւն*[1] *տորոհիցես՝*
[2]Բէ [1]Էրբէ+ զԲշ–––––Բէ–նն Բողցէ՝

*ընԹատրեցից*[2] *վճռական արզոք.* —
ըն3է–էցէց յոյոնէ լ–––––որ Բոն. [է–]

*յարքունս զքեզ ծգեալ եւ համոզեալ*[3]
է չոէ — ոՅէց է– Բոէէցէց

*ի հուսկիցն կարծիցղ:*
է վէրՉէն ոէէտո–ԲէՆէ:

1. "Թրողակութիւն,, կը ներկայանայ թէ ձեռագրաց մէջ եւ թէ հին բառագրոց մէջ

շատ տարբեր ձեւերու մէջ. Ագր. ունի թրաւղակ = անգէտ, անկարգ. իսկ Երմ. “թրուշակ = անարգ„, կը պահենք ձեռագրաց “թրողակութիւն„ը, բայց պիտի նախընտրէինք “թրուշակութիւն„ ձեւը:

2. Ընթատրել է հոս բառը, զոր օրինակողներ շփոթած են “ենթադրել„ բառին հետ իսկ Նբ. այս “ենթադրել„ բառը՝ hypothèse-ներով մեկնելէն ետքը, կ'առաջարկէ տարակուսանօք “ենթագրել„ բառը: Բայց Մագիստրոսի՝ այս 6 հատուածներուն մէջ ըրած բառախաղերէն գեղեցկագոյնն է այս “ընթատրելը„, կազմուած “ընդ-ձեռել„ բառին նման: Արդէն կայ Ագր.ի մէջ “ընթատրութիւն = իրս այլոց ընձեռել„ մեկնութեամբը. իսկ Երմ. թէ ձեռագիր եւ թէ տպագիր ունի՝ “ընթադրութիւն = իրս այլոց ընձեռել„, սակայն հոս ալ՝ բառերու շարքը ցոյց կու տայ, որ տպագրութեան սխալ է դ, որ պիտի ըլլայ տ:

3. Համոզեմ = թափեմ: Նբ.ի տուած մեկնութեան վրայ պէտք է յաւելուլ Երմ. “համոզել = միջնորդել„, եւ Ագր.ի “համոզակ = միջնորդ„ բառերը:

* * *

Հոս կը վերջանայ Պր. Նորայրի “Բանասէր„ թերթին մէջ հրատարակած ուսումնասի-

բութիւնը, եւ կամ աւելի ճիշդ ըսենք "գա-մագտական„ին "Գրիգոր„ անուան ծայրագրե-րով՝ նոյն իսկ Մագիստրոսի տուած մեկնու-թիւնը։

Պիտի սկսինք 2 մասը՝ Մագիստրոս անունը, պահելով նոյն կարգը. բայց որովհետեւ մեկնողական նամակ մը չունինք ի Մագիստրոսէ, դիւրին պիտի ըլլայ ընթերցողին գուշակել, որ մեր հետազօտութիւնը շատ քրտինք ու աշխա-տանք արժեց։ Դեռ տեղիս տեղիս մեր ենթա-դրութիւնները բաւական հիմնաւոր չէին՝ ամէն տարակոյս փարատելու չափ, եւ անոր համար հարցական նշաններն ալ գործածելէ ետ չկե-ցանք։ Մեկնեցինք շատ բան ուրուն համեմատու-թեամբը շատ քիչ են տարակուսական կէտերը։ Միայն պիտի խնդրէինք՝ զմեզ կարդացողներէ որ սխալ չհամարէին չէտ մը՝ երբ իրենց կարծածին ու-ֆէրացածին համապատասխան չգտնէն. հատուածներն աչքի առջեւ բերեն, մեր ապացոյցներն ու վկայութիւնները կշռեն եւ պիտի համոզուին մեր — խղճամիտ եւ ուղղամիտ խուզար-կութեաց։

Սկսինք։

**7***.

*Մատիր դու առ մակագրութիւնս*[1]

Մատէր դու է գրութիւնս

---

* Կը շարունակենք թուերը Պր. Նորայրի 6 հա-տուածներուն կցելով մեր քննելի հատուածներն ալ։

*անմոմոշական՝*[2] *միտելով*[3] *մազոյն*[4] *եւ*
անդանդաղ՝ կշելով թելոյ եւ

*զմակ*[5] *անկեալ ըըօք,*[6] *առ մարզ,*
զերկոտասամեկ փակեալ աչօք[դ], ի հրահանգս,

*յորում խուզում յարանուն*[7]:
յորս յոյժ [եւ խնդէր] խորանէն[է]:

1. *Մակագրութիւն* = *գրութիւն* [*վերտառութիւն*]: Մեր առջեւ ունեցած բոլոր ձեռագիր ու տպագիր օրինակներն ունին միաբան “մակադրութիւն„, եւ սակայն պէտք է կարդալ “մակագրութիւն„, վասն զի հոս վերադրութեան գաղափար չկայ, այլ գրուածքի: Համոզուելու համար բաւական է աչքէ անցընել Մագիստրոսի Նամակներն, եւ պիտի գտնենք միշտ “մակագրութիւն„, օր. “Նախ այսքան առկա·ացի առ ասացեալս՝ պատճառ մակագրութեան„ Մկս. էջ 209. — “խնդրեմ վերծանել զմակագրութիւն տախտակիդ [Նամակիդ], սակս որոյ է բանդ„ Անդ, էջ 233. — “Այժմ մատենի մակագրութեան վերծանեաք„ Անդ, էջ 9. — “զտարակուսական մակագրութիւն վերտառական քոյդ խոհականութեան.....ընկալայ„ էջ 75: Գոյական ձեւին քով ունի եւ “մակագրել„ բայը. այսպէս. “ոչ պերճաբանութեամբ զբոլորն բաւեմ մակագրել քեզ„ էջ 73. — “եկ դու

այժմ, զի զորս հանդերձեալ եմք մակագրել, այսմ պարապեսցուք„ էջ 222. — "յայսցանէ յոլովագոյնս ինձ մակագրել քեզ՝ ոչ դժուարին է" Թ. 217 եւն եւն։

Բայց նոյն իսկ բառին կազմութիւնն՝ իբր "մակ-ա-գրել„ հաւասար է յն. ἐπι-γραφή, իսկ բայը՝ ἐπι-γράφω, ես այս կը փարատէ ամէն տարակոյս, քանի որ "մակագրութիւն = ἐπίθεσις = վերադրութիւն կը նշանակէ, եւ գրէլու— հետ առնչութիւն չունի„։ Տես նաեւ վարը 5րդ թիւը։

2. Անմոմոշական = անդանդաղ [քաջաբար]։ Ագր. եւ Երմ. ունին "մոմոշ = գետնաքարշ, դանդաղ.„ կրնանք շատ դիւրաւ հետեւցնել "անմոմոշական„ ժխտականին նշանակութիւնը, "անդանդաղ„ = τολμηρῶς = համարձակ[1]։

3. Միտել = կցել [միացնել]. √ Հբ տ. "Հանդ. Ամսօր.„ 1890, էջ 284։ Ագր. ունի "կահել, կշռել„. իսկ Երմ. միատել [միաբանել]։ Թէպէտ Հբ ունի այլեւայլ նշանակութիւններ, ինչպէս՝ "սաղապելով ի սոյն մէտ երանեսցին„ Մատեն. Խոր. Վենետ.,

---

[1] Մագիստրոս ունի Մկս., էջ 55 "մուշել„ բառը՝ "խռուացեալն այն հերօք եւ մաշեալն սրտիւք„ բայց իբր հանդարտասիրտ, հեզաբարոյ աղերս ունի՞ մեր մոմոշ բառին հետ չենք կրնար վճռել։ Կարելի է, եթէ "մոմոշ„ին կազմութիւնն ընդունինք իբր մոշ-մոշ. այն ատեն ժողովրդական "մշ-իկ մշ-իկ„ն ալ կը մեկնուի։ Այս մաշել բառը դեռ անցած չէ ո՛չ հին եւ ո՛չ նոր բառագիրքերու մէջ։ Բայց Միւնխենեան օրինակն ունի "մաշեալ„։

էջ 581) եւն եւն, բայց այս կցէլ մացնէլ նշանակութիւնն աւելի յայտնի կըլլայ Մագիստրոսի հետեւեալ խօսքէն. “որպէս զդրակոնտիկոն շարամանաբար մակ ոսկւոյ մածեալ մատիտմամբն մետ եղեալ„ Մկս. էջ 203։ Ճարտասանական ձեւ մը գործածել ուզած է Մագիստրոս՝ այս տողին մէջ իւրաքանչիւր բառին նոր յէ- մը տալով եւ կամ՝ կիրակոսին խելքը թոցնելու չափ, խրթին նշանակութիւններ գործածելով։ Մկս. էջ 237 կը գործածէ Մագիստրոս “մեղեալ, յարդեալ արասունեալ„ բառերը։ ԱԳր.ի տուած կահէլ նշանակութիւնը կը գտնենք Մագիստրոսի այս ասութեան համանման դարձուածքի մը մէջ, որ կը լուսաւորէ այս խրթին ասութիւնը՝ “Եւ արդ զի բանս զքեզ այս չահաւորէաց լինել մակացու„ = “Եւ արդ որովհետեւ խօսքս զքեզ այս երեք բաներով զինեց՝ ըսածս հասկնալու„ (Մկս. էջ 78)։

4. *Մագոյն* = *թեւս*. “թեւ„ նշանակութիւնը կը գտնենք Երմ.ի մէջ (թէ ձեռագիր եւ թէ տպագիր)։ Եւ խօսքին իմաստը կ՚արդարացնէ այս բառագրքին տուած նշանակութիւնը։ “Միտել մագոյն„ “թեւեր կցել„ անտարակոյս պիտի յիշեցնէ Ըէ-աչոխէլ բառը, համեմատէ՝ “այսպիսի գեղեցիկ գիւտից եւ խնդրոց Ըէ-աչոխէլով թափառեալ եւ հանդիսացեալ ջանիւ խոկաս հասանել„ Մկս. էջ 172։ (Տես աւելին վարը՝ թիւ 6։)

Թեւերու կարեւորութեան նկատմամբ համեմատել Արիստոփանէսի «Հաւերը» 8 տեսիլ (վերջերը), թէ ինչպէս թեւ ունենալով ամէն դժուարին բաներու ալ կը յաղթէ մարդ. եւ Յոպոպն կ'ըսէ «մենք անձինք թեւաւորացդ հետ ի՞նչպէս միանանք» (Անգ.)։

5. *Մակ* = *երկու*: Այս՝ Հբռ.էն իրաւամբ աւելորդ համարուած մասնիկը, եւ զոր Բուգգէ՝ քաջ հմտութեամբ դուրս կը նետէ հնդեւրոպական բառերու շարքէն[1], սովորաբար ածանցներ կը կազմէ ստորին կամ յետադարեան հայերէնի մէջ (եւ ոչ մէկ ներկայացուցիչ ունի ոսկեդարու բարբառին մէջ). եւ կը նշանակէ ի վերայ. այսպէս մակբերութիւն, մականուն, մակադրութիւն («այպանեն զանուն ընկերին՝ մակադրօ-նշանամբ անուամբ եւ կատակութեամբ» [Թանգար. հ. եւ ն. նախն. Բ. Հատոր. Վենետ. 1898, էջ 430])։ Բայց քանի որ «ի վերայ» նշանակութեամբ չի մեկնուիր հատածս, հարկ էր գտնել այս բառին այս «երկու» իմաստը, եւ գտանք. որովհետեւ Ագր. էջ 207 նշանակած է որոշ՝ Մակ = Երկու, կամ աւելի»: Հբռ. ալ կը յիշէ այս՝ «երկու» նշանակութիւնը՝ հին բառարաններէն առնելով. «Մակ = ի մինն մէկ այլ յաւելուլ», ուրեմն՝ 1 + 1 = 2։ Եւ որպէս զի ամենեւին տարակոյս չմնայ, պիտի յայտարարենք որ Գրիգոր Մագիստրոս

---

1 Տես Beiträge z. etymolog. Erläut. der armenischen Sprache, 1891. ZfVS. N. f. XII. 1.

այս ծակը՝ իբր երկու, ուրիշ տեղ մըն ալ գործածած է։ Ահա՛ վկայութիւնը. «Բայց հաղորդ ըստ պարսկականին է իմանալ ծագ (= ծակ) նի-... որպէս մեր[+]ն թուէին տան հօրն-ը» Մկս. էջ 96. այսպէս զատ զատ ունի Միւնխ. ձեռագիրը, իսկ Պր. Կոստ. տպած է «ծագնի-», թէպէտ եւ կը յիշէ ծանօթութեան մէջ՝ օրինակ մը, որ ունի ծագ նի- (զատ զատ)[1]։

6. *Անկեալ բբօք = փակ աչօք = աչքի գնդակ*, գերմ. Augapfel։ Բիբ+ ծանօթ է սովորաբար իբր pupilla (տճ. պէպէք), աչքի գնդակին միջավայրի սեւ կէտը, pupa. «զբիբս անկեալ չար մաղասն» (Ոսկ. Մատթ. Ա. էջ 331) եւն եւն. բայց Հայերէնի մէջ իբր աչք ալ կը գործածուի. բաց ի Մագիստրոսի այս վկայութենէն, ունինք նաեւ էջ 206 «անբացք բբոց եւ աչացուք». Նոյնպէս՝ «բիբ+ աչաց իմոց արտաքս ելին յինէն» (Վարք եւ վկայ. Սրբոց, Ա. Հտ. Վենետ. էջ 578) «եւ այլ ոմն հարեալ վիմաւ զբիբս աչաց նորա եւ տեսանողականն կախէր զերեսօք նորա» (Անդ էջ 566). «ի բաց խլեալ զբիբս ական նորա» (Անդ. Բ. Հտր. էջ 445 [Հմմտ. եւ «Հանդ. Ամսօր.» 1893, էջ 82])։ Հբռ. էն կը յիշուի այս նշանակութեամբ միայն Ղամբրոն. հմբ. վկայութիւնը. «բիբն՝ ակնակապիճքն է որ արտեւանամբքն միշտ եւ անյապաղ պարսպեն զաչսն»։

---

[1] Թիւ 1—5 մ՛ գրով սկսած նմանաձայն բառերու ուշադրութիւն!

Եթէ ծոյ ուշէլոյ (= ուշադրութեան) թեւեր զգեցնել կ'ուզէ Մագիստրոս, պարզապէս paraphraseով մեկնել ուզած է՝ մեր Ընդաչոխէլ բառը (տ. վերը թիւ 4)։ Այս նախադասութեան աւելի լուսաւորութեան համար համեմատելու է հետեւեալը. "միշտ ղաղ ՄՏԱՑ իմոց առ երաշխաւորն անդադարապէս վերառաքէ„ (Վարք Հարանց. Հտ. Ա. Վենետ. 1855, էջ 309)։

Հին բանաստեղծներու եւ մանաւանդ Արիստոփանէսի յատուկ իմն է, թէ չաուաէն յառաջ եւ թէ բանաստեղծելու համար՝ Նոէչներ, Նէաէր ըղձալ։ Բաւական է այս կատակերգակին "Հաւերը„ կարդալ համոզուելու համար։ Մարդիկներու հետ ի մարտ պատրաստուողներու կը գոչէ Արիստոփանէս (20 տեսիլ) "Շուտով թեւեր հոգացէք այս գաղթականներուն„ որոնք կռուելու կու գային։ "Մատիր դու, ով Մուսա, յարեաց ի սուրբ պարն„ (Արիստոփ. "Գորտեր„ Գ. Ար. 5 տեսիլ.)։

7. Յարանուն = խորաքնին: Այս յարանուն բառը կը մեկնուի ըստ նշանակութեան՝ իրմէ յառաջ գտնուած խաղում (= յուզում, զոր Մագիստրոս սովորաբար խաղում, խաղէլ կը գրէ) բառով, որուն իբր լուսաւորութիւն յառաջ կը բերենք Մկս. ի (էջ 57) մէկ խօսքը. "Ի բազում տարբերութենէ յաղման մրրկեալ եւ պտուտեալ պայքարմանցս„.

“բազմօրինակ են .. խոր-ղէջ քննութեան կամք„ (Վարք Աղեքս. Վենետ., էջ 5)։

Այս անծանօթ բառին կազմութիւնը լաւ չի լուսաւորուիր նոյն իսկ եթէ յար-անհուն կամ անհուն ձեւին վերածենք։ Խնդիրը բոլորովին ուրիշ գոյն կ՚առնու, եթէ “յար անհուն„ ձեւն ընդունինք, նշանակութիւնն ալ չի հակառակիր։ Միայն Ագր. եւ Երմ. փոքրիկ լուսաւորութիւն մը կու տան, “յարահուն„ ի՝ խորտակնող մեկնութիւնը կցելով։ —

Հոս տրուած մեկնութիւններով դիւրին կ՚ըլլայ հասկնալ այս 7րդ հատուածին իմաստը։ Ցերեւան կու գայ Մագիստրոսի բանաստեղծական աւիւնն, երբ կ՚ըսէ. “ուշադրութիւնդ ուղղելու համար փակէ՛ երկու աչքերդ եւ այսպէս այս խորտակին մրցմանց (հրահանգներու) անդանդաղ մերժեցէր„։

## 8.

Ախորժեալ[1] արտասանեմ[2] զղաստ
Հեշտ է ինձ յայտն[աբան]ել զգօնա-

արկածեաց[3] գիր յանգականդ[4], զի
Ընթացմանց գիրս ոտանաւորն, զի

զոփեցիս[4]։ Թառամիր[5] իրենող[6]
Նեղեցիր։ Վայրապար իմաստասն [կործեցեալ]

Թինուսեանդ[7], ներդիմնեա՛[8] զժտեալս[6]։
Փիլիսոփայդ, մեկնեա՛ զխնդրեալս [է բեն]։

Այս շատ խառնակ խօսքերը պէտք չեն զարմացնել զմեզ, վասն զի ազդու օրինակ են թէ չհասկցուած գրութիւն մը՝ դարէ ի դար ընդօրինակողներու կողմանէ ինչպիսի անճանաչելի փոփոխութեանց կրնայ ենթարկուիլ…:

Մեր՝ այս հատուածին տուած մեկնութեամբ Երկու կէտեր ուշադրութիւն կը գրաւեն. ա. բնագիր մը կը վերակազմենք, որ մինչեւ հիմայ ձեռագիր ու տպագիր խղուըրտաքանութիւններէն որոշ միտք մը կը ցոլացնէ. բ. 4—5 բառերու նշանակութիւնները կը ճշդենք եւ անգամ մը եւս Մագիստրոսի սրամտութեան վրայ խորապէս սքանչանալու առիթը կ'ունենանք:

1. *Ախորժիմ* = *Հեշտ է ինձ* [*ախորժիմ*]: Ընտիր հայերէնի մէջ “ախորժիմ„ սովորաբար միշտ “յօժարիմ„ “սիրեմ„ կը նշանակէ. Հարիւրաւոր օրինակներէն միայն 2—3 հատը յառաջ կը բերենք, աւելին աւելորդ է, որովհետեւ շատ ծանօթ իրողութիւն մըն է մեր լսածը. օրինակ. “ախորժելով լսէ„ (Ոսկ. Մտ. էջ 653). “չախորժէ զտանջանսն„ (Անդ. էջ 672). “ոչ ախորժէ ընդ չարիս„ (Եզն. էջ 36). “եթէ ախորժեսջիք եւ լուիջիք ինձ„ (Եզն. էջ 168) եւն եւն: Իսկ այսօրուան մեր “ախորժակը„՝ իբր թեթեւ քաղց, մեր հնոց քով (5դ դար) հազիւ թէ 1 անգամ տարրական ձեւով գտնուի: Բայց միջին դարու հայերէնի մէջ ախորժելու “յօժարելէն„ կը փոխուի կամք նշանակութեան. Պղատոնէ

Տրամախօսութեանց մէջ միշտ այս նշանակութեամբ կը գործածուի (տես. օր. աղ. էջ 197)։ իսկ այս "Հեշտ է ինձ, դիւրին է„ եւն նշանակութիւնը կը գտնենք ԱԳր.ի մէջ էջ 166։

2. *Արտասանեմ* = *յայտնեմ*, *յայտնաբանեմ*: Մագիստրոսի Ծածկագրութեան գաղտնեաց քիչ շատ խելամուտ եղողն, իսկոյն կ'ըմբռնէ այս նշանակութիւնն, որ դժուար իսկ չէ. վասն զի արտասանել (aussprechen, ausdrücken) բերնով ըսել բան մը. իսկ մտօք ըմբռնուածը՝ այսինքն՝ դժուարին իմաստ մը բնական հետեւութեամբ կը յայտնուի, կը յայտնաբանուի։

Պարզ լուծումը կու տայ մեր մեկնութեան՝ "Խոր. Մտնգր.„ (էջ 529) վկայութիւնը. "արտասանութիւն է բան պատմական ի դէմս ածելով երեւելապէս զյայտնելոյն„. եւ կամ ըստ "Պղտ. Տրամ. Տիմէոս„, էջ 86 "շարժումն անձին՝ որ ի խորհեցողականին եղեալ առանց իրիք արտաձայնութեան„։ Թէ ՀԲռ. եւ թէ ՍԲռ. կը յիշեն "Խոր. Մտն.„ վկայութիւնը, բայց տարբերութիւն չեն դներ այս բառիս այլեւայլ իմաստներուն մէջ. միայն ԱԳր. կը գրէ որոշ. "արտասանել = յայտնաբանել„։

3. *Դատ արկածեաց* (*թէ՝ ղաղակեաց?*)։ Առաջին հարցական նշանը կը ստիպուինք զետեղել այս կնճռոտ բառին առջեւ։ Կրնայ կար-

դացուիլ ա. Դատ արկածեաց իբր "վճիռ Թշնամանաց" (տես ԱԳր. արկածք = թշնամանք)։ Բայց այն ատեն ջնջելու է քանի մը ձեռագիրներու մէջ գտնուած գէր բառը։

Կրնայ կարդացուիլ բ. Նոյն իսկ Մկս.է՝ էջ 236, գործածուած Դատարկոյծ (տես նոյնը՝ Տղէփ. Մագ. Վենետ. էջ 96) իբր Բոփոռեցուցին գէր, Կիրակոսի միտքը տատանող, ցնդեցնող։ Բայց կրնայ գ. նաեւ առնուիլ՝ Դաղակէաց գէր = շաղակրատ (ըստ ԱԳր.ի). սակայն այս վերջինս դժուարաւ թէ կարելի ըլլայ ենթադրուիլ, վասն զի այն ատեն պիտի ստիպուինք ընդունիլ, որ ինքն Մագիստրոս իւր իսկ գրած մէկ "յանգական՝" չափաբերեալ գրուածքը՝ ինքնին կը մկրտէ իբր Շաղակրատական գէր։ Այս երեքէն իբր ամենայարմար կ՚ընտրենք մենք "Դատ արկածեաց" ձեւը. եւ կը սպասենք հմտագունից վճռոյն։ Արկածե- ըստ ինքեան պէտք էր արկածից հոլովուիլ, բայց անսովոր չէ ից-ի տեղ եաց տեսնել շատ տեղ։ Այս եաց մինչեւ ոց հոլովակերտը կը փոխանակէ շատ անգամ (հոգիք = հոգեաց որդիք = որդեաց եւն)։ Իսկ մեր առաջարկած "վճիռ" բառին համար տես Մկս. էջ 110 առ Նոյն Կիրակոս ուղղեալ խօսքը "յորժամ դատողութեան պարապեալ տրամախոհէի հատանել վճիռ . . ."

4. Գիր յանգականդ = չափական գիր։ Ձեռագիրներէն ոմանց "յարգական" բառը (զոր ունին ՆԲ. Անտ. եւ Վիեն. ձեռա-

գիրները) կ'ուղղուի աւելի ճշդագոյնս՝ “յանգական” ձեւով՝ Էմ.ի եւ Մկս.ի տպագրութեանց մէջ: “Յանգական” ոտանաւոր մը՝ “մի տառիւ վերջ յանգական” (Ն. Շն. Բանք չափաւ, Վենետ. էջ 233) եղածները կը համարուին սովորաբար. եւ այս իմաստով ալ կը հասկնայ Մագիստրոս “յանգ, յանգաւորել” բառերը (“զաւետարանիչս մեր պարսաւէր, իբրու թէ նոքա ոչ գեղայարմար եւ չափաւոր բանիւք ոտից՝ զաւետարանն յարմարեալ “յանգաւորեցին” ի մի տառ եւ ի գիծ” Տղչփ. Մագիստ.ի Վենետ. էջ Բ.), բայց թէ ջոկականն ալ՝ իբր յանգական նշանակած ըլլալը Մագիստրոսի ծածկագրութեան համեմատ է: Մագիստրոս կ'ըսէ՝ Մկս. էջ 219 “մակհուպ յեզերս սպառուածի ոտանաւորս եւ ջոկաբերականս գերակայ գրել տաղս”: Ի՞նչ չափով: “Յանգական” բառը ունի Մագիստրոսի քով եւ վերջնական նշանակութիւնը. օր. “որ ոչ ոք զծայրանալն եգիտ յանգական համամբ” (Մկս. էջ 35) (այսինքն՝ “ոչ ոք վերջնականապէս հասաւ”): “Ոչ կարկատեցի զսա հագներգութեամբ եւ շարամանել յոլովս ոտորատացութեամբ (= յանգել), այլ յայտնի եւ դիւրահաս” (Մկս. էջ 233). “չափաբերական ինչ տաղիւք եւ կամ կարկատուն բանիւք առասանել” (Անդ 24):

“Առակական հագներգութիւն” անուանածներն ալ՝ ըստ մեծագոյն մասին չափա-

բերական են, այսպէս. “այսօրինակ առասացութիւն ——— (= առակաւոր) հագներգութիւնք սակս իմաստութեան ներհակաց„ (Անդ, էջ 204). “բայց թէ պարտ եւ հաճոյ ոմանց թուեսցի, որք հռետորացն են մանկունք, ———— ինչ շարամանել„ (Անդ. էջ 232)։ “Հագներգութեան„ վրայ Մագիստրոսի գրածը (էջ 33) կը յանձնենք ընթերցողաց ուշադրութեան. որ “յանգական„ է եւ սակայն “չափական„ կ'անուանէ, նոյնպէս իրաւունք մը տալով՝ կարծես, մեզի իւր “չափական„ անուանածը “յանգական„ կոչելու։ Միայն այս ստոյգ է որ Մագիստրոսի բառերը՝ մանաւանդ բանաստեղծութեան սեռին վերաբերեալները՝ զատ բառագիրք մը կրնան կազմել։ Յափշտակուած է Մագիստրոս Համերոսի “վճիտ եւ ականակիտ, չափաբերական, մանուածոյ, ոսկետեսակ, հրաշառասական մակարդակեալ տողիւք„ (Անդ, էջ 84)։ Այսչափը միայն որոշ յայտնի է թէ իւր “մակագրութիւն„ = ἐπίγραμμα [ἐπιγραφή] անուանածը (ինչպէս են այս Նամակին հատուածիկներն) են՝ փոփոխակի վեցաչափով եւ հնգաչափով յօրինուած մանր բանաստեղծութիւններ, որոնց մէջ կը գտնուի գլխաւոր միտք մը լուրջ կամ սրամիտ եւ կամ կատակերգական. եւ թէ այսպիսի չափերով գրուած համարելու ենք այս երգիծական Նամակն ալ՝ շատ հաւանական է։

4. *Զոփեսցիս = նեղեսցիս [խորհրդով]:* ԱԳր. ունի “զոփալ = դողալ, նեղիլ խորհրդով”. իսկ Երմ. մի եւ նոյն նշանակութիւնները կու տայ “զօճալ”ի: Այս “ղօֆալ” հին եւ ընտիր բառը կը ներկայանայ սովորաբար՝ ղօղալ, սարսռիլ, վշտագնիլ իմաստով. այսպէս. “վասն որոյ յոյժ իսկ ղօֆամ, զի... մեք սատանայի նախանձաւորք լինիմք” (Ոսկ. Մտ., էջ 599). “ստգտանէ եւ ղօֆայ զանձն” (Անդ, եջ 30) եւն եւն. իսկ միջինդարեան մատենագիրներէն ունինք՝ “սարսափեալ ղօֆայեալ դողացաւ սիրտ իմ” (Յովհ. Կթղ. Պտմ. Հայոց. Մոսկ. էջ 195). “լոկ ղօֆայցէ+ իբրու զմի յայլոց մարդկանէ” (Մատեն. Խոր. Վենետ., էջ 400 եւ 424):

Մագիստրոսի սիրական բառերէն մէկն է. “ղօֆալով թօպեալ իբրեւ ի պիսիդոնի” (Մկս., էջ 203). իսկ էջ 237 գործածած “ղօֆէալ միտեալ”, ձեւէն յայտնի է որ Մագիստրոս երկու ձեւերով ալ կը գործածէ այս բառը, իբր ղօֆալ եւ ղօֆէլ: ՀԲռ. կը յիշէ “ընդ անտէրունչ լինելն հօտին դժուարէր եւ ընդ անապատէն զրկել ղօֆէր” (Սկեւռ.): Հոս յայտնի է “նեղէլ, տառապէլ” իմաստը, որ կայ Փ.լոնի մէջ ալ. “ղօֆայ տրտմի եւ վշտանայ մեղաւորն”: Պր. Կոստանեանցի “զոփեսցէ” ձեւը չենք գտներ ո՛չ ՆԲ.ի եւ ո՛չ Վիեն. ձեռագրին մէջ (որ ունին “զոփեսցէ”), ո՛չ Անտ. ձեռագրին մէջ (որ ունի նոյնպէս “զո-

փեսչէ»), ոչ Էմինի հրատարակած (1861, Москва, Всеобщая Исторія, էջ 208—9) բնագրին մէջ (որ ունի “զոփասչէ„ բայց իբր ծանօթութիւն նշանակած տարբերակին [variante] մէջ “զոփեսչէ„)։ Հետաքրքիր էինք իմանալու թէ “զոփեսչէ„ ձեւը քանի՛, եւ ո՛ր ձեռագրաց մէջ կայ (Թէպէտ, էջ 280 ծանօթութեան մէջ “զոփեսչէ„ կը յիշուի տարբերակէ մը)։ Ուրեմն մեր ընտրած “զոփեսչէ„ գրութիւնը թէ՛ ըստ բազմաթիւ ձեռագրաց է եւ թէ՛ ըստ իմաստին։

5. Թառաւիր = վայրապար,
6. Իրենող = իմաստուն[կարծեցեալ],
7. Թինոսեան = փիլիսոփայ:

Այս երեք թուերը մէկ գլխի տակ ամփոփեցինք, վասն զի ձեռագրաց մէջ կատարեալ խառնակութիւն կը տիրէ եւ իրարու հետ շփոթուելով՝ իրարու մէջ անցած եւ անիմանալի բառեր կերտած են։

ՆԲ. ունի՝ Թառաւիր երին աղթինոսեանդ.
Մկս. „ ՝ Թառ աւրինող թինոսեանդ.
Ընտ. „ ՝ Թառաւիր երին ողթինոսեան.
Էմին. „ ՝ Թառաւրինող թինոսեան.
„ տարբ.՝ Թառաւիր իրենող Թինոսեան.
Վիեն. „ ՝ Թառաւիր երին աղթինոսեանդ.

Եւ սակայն՝ ինչպէս ցոյց պիտի տանք, բնագիրը պէտք է ըլլալ ուղիղ՝ “Թառաւիր իրե[ու]նող Թինոսեանդ„՝ վերն յառաջ բերուած 5 օրինակներէն ըստ բաւականի տար-

բեր. միայն 5րդը՝ այսինքն Էմ.ի հրատարակութեան 1 տարբերակը կը մօտենայ ուղիղ իմաստին, զոր կը յիշէ արդէն ՍՌ.ի բառարանը (Վինն. Մատ. 6 ձեռագ.) "Թառաւիր իրենող Թինոսեան":

5. *Թառաւիրը՝ առաւիր* ձեւով իբր "ընդ վեր եւ ընդ վայր" կը յիշատակուի ԱԳր.ի մէջ (էջ 165ա) եւ "ընդվայր կամ ընդվեր" ձեւով Երմ.ի մէջ: Նոյնպէս կայ ի մէջ այլոց, Ար. Լաստ.ցւոյն քով (տպ. Վենետ. էջ 4) "Եւ այս ոչ եթէ թառաւէր եւ ի վեր անց ընդ նոսա". "Ոչ թառաւէր վայրապար հերակլեսոս ազգ զնա կոչէ լինել." (Փիլ. Բ., էջ 82). "Ոչ թառաւէր վայրապար ասեմ" (Անդ, էջ 95): "Թառաւիր" կը յիշատակուի ԱԳր.էն եւ ՍՌ.էն. իսկ Երմ. թէ ձեռագիր եւ թէ տպագիր՝ ունի մի եւ նոյն նշանակութեամբ "Թէառաւիր".

6. *Իրենող* բառն արդէն իմաստէն կը մեկնուի, բայց դարձեալ այլեւայլ ձեւերու տակ խոշտանգուած է ինչպէս վերը տեսանք: ԱԳր. եւ Երմ. կը յիշեն իրենող ձեւ մը իբր իմաստուն. բայց քանի որ յաջորդ յունարէն բառն ալ (= Թինոսեան) "իմաստուն" կամ "փիլիսոփայ" կը նշանակէ, հարկ է այս "իրենող = իմաստունը՝" աւելի մանր քննութեան ենթարկել:

Եթէ ԱԳր. իւր բառագիրքը գրած ատեն այս բառին իմաստը՝ — իմաստուն — ծաղրական մօտք առած է, այն ատեն ճիշդ

թափանցած է Մագիստրոսի մտքին։ Դժբախտաբար՝ պարզապէս իմաստօն նշանակութիւնը տալով, ԱԳր. ստուգութեամբ չի համոզեր զմեզ՝ իր ճիշդ ըմբռնման նկատմամբ վարանումներ չունենալու։ ՍՌ՝. երողուբոր բառին մէջ կը յիշէ "հին բայ" մը՝ էրեմ, որով կը մեկնուին ՆԲ.ի 3 հատուածիկին մեկնութեան՝ էրաժել եւ երողուբոր բառերը։

Բայց հոս կը բռնադատուինք զարմանալ՝ Մագիստրոսի յունագիտութեան վրայ. արդէն ամբողջ այս թղթերը կը վկայեն, թէ խորապէս թափանցած է Մագիստրոս յունարէնի ոգւոյն, վասն զի ոչ թէ միայն յունարէն բառերու վրայէն հայերէն բառեր կը կերտէ, այլ այն յունարէն բառերու ունեցած բոլոր գործածութիւններն ու իմաստի երանգները գիտէ։ Իրէնող՝ կերտուած էրէմ յն. πράσσω (կամ Նոր ատտիկ. πράττω) բառի վրայէն, կը նշանակէր ոչ թէ միայն էրաժել, էրաֆործել, այլ նաեւ ֆործով մը զբաղիլ, անոր մէջ կատարեալ երեւալու, կատարելագործուելու ջանալ։ Այս նշանակութիւնն աւելի լաւ կը մեկնուի յն. πραγματειώδης բառով, "էր մը, բան մը (= Փիլիսոփայ մը) էրէ-ցող, որ էրաղէս չէ. եւ կամ բայը՝ πραγματέυομαι "զբաղիլ բանով մը՝ տանց ըլլալու[1]"։ Ուրեմն էրէնող է՝ փիլիսո-

[1] Մագիստրոսի քաջ յունագիտութեան խելամուտ ըլլալու համար, բաւական կը համարինք՝ ի մէջ այլոց, (Մկ.ւ.ի, էջ 202) "Եւ արդ ընծայեմք" հատուածը նշանա-

փայի գործերով զբաղելով (= ἡ φιλοσόφου πραγματεία) “փիլիսոփայ կարծել ինք զինքը, փիլիսոփայ երեւալ„:

7. Թինոսեան = փիլիսոփայ: Վերոյիշեալ 5 եւ 6 հատուածիկները բաւական են հասկնալու համար թէ Մագիստրոսի գործածած Թինոսեան(դ)՝ “փիլիսոփայ„ կը նշանակէ: ՍՌ. ունի “Թինոսիկ = իմաստուն ցունաց. իսկ ԱԳր. եւ Երմ. պարզապէս՝ “իմաստուն„: Ուրեմն “Թառաւիր իրենող Թինոսեանդ„ պէտք է հասկնալ “ով ի զուր փիլիսոփայ համարեալդ„:

8. Ներդիմեա = “մեկնեա, յայտնեա„. այսպէս ունի ԱԳր. իսկ Երմ. “Ներդիմել = յայտնել„: Ճիշդ այս մտքով կ'ըսենք մենք ալ “Թափանցել„ “Թափ անցանել„ բանի

---

կել. է Թալատտայ կարդալու է θάλαττα (= θάλασσα) = ծով, եւ այն ատեն հեղինակին “մարգարտի վրայ„ ըսածը հեշտեաւ կ'ըմբռնուի: Ընդհանրապէս մտադիր կ'ընենք, որ Գր. Կոստանեանցի հրատարակութեան մէջ գլխագիր տպուած շատ մը բառեր՝ օտար (յունարէն) բառեր են, զորոնք հարկ էր բնաւ գլխագիր չհրատարակել, այլ նոտրագիր. բաց ասկից բազմաթիւ յատուկ անուններ ալ իբր պարզ բառեր՝ մանրագիր տպուած են եւ երբեմն իբր անջատ բառեր՝ վանկերն իրարմէ անջատուած են: Իրողութիւն մը որ Գր. Մագիստրոսի՝ արդէն դժուարիմաց լեզուին դժուարակնճիռ հանգոյցն՝ աւելի անլոյծ ընելու կը ծառայէ: “Թալատտայ„ բառը՝ կոր այսօր շատերը յատուկ անուն պիտի համարին, եթէ նոտրագիր եւ մանրագիր տպագրուէր, օտար բառ ըլլալն իսկոյն պիտի հասկցուէր եւ այս գեղեցիկ բայց խրթին հատուածիկը դիւրաւ պիտի լուծուէր:

մը իմաստին = durchdringen։ Զարմանալի կը գտնենք որ ո՛չ ՀԲռ. եւ ո՛չ ուրիշ մը կը յիշատակեն՝ ո՛չ թէ այս նշանակութիւնը, այլ եւ ո՛չ ինքնին “ներդիմել„ բայը։ Կը գտնենք այս բայը Ասողիկի մէջ (Հրտրկ. Ս. Մալխասեան) էջ 225. “Եւ նախ յառաքելոցն սկսանիմք զայս ներդիմեալ„։ Հմմտ. Մկս. “ներդիմել„ էջ 114։

9. *Զժտեալս* = *զխնդրեալս* [*ի քէն*]։ Երմ. ունի “ժտել = խնդրել, ժնգռել?„։ Մագիստրոս գործածած է այս բառը (Մկս. էջ 238) իբր “իրապէս հասկնալ„ “ի վերայ հասանել ըստ իրին„ (տ. 3 հատուած ՆԲ.), որ կը կազմէ “ժտել„ բային 3րդ եւ նոր նշանակութիւնը։ Վասն զի “ժտել„ յունարէն ζήτεω կը նշանակէ ա. մերձենալ համարձակիլ. բ. համարձակելով խնդրել. բայց հոս կը համապատասխանէ յունարէն բառին ուրիշ մէկ նշանակութեանը, որ է ա) յուզել, որոնել. բ) քննելով գտնել = վերահասու ըլլալ։ Այս բառին բովանդակ գործածութեանը մէջ՝ որ շատ ընդարձակ է, Մագիստրոսի այս տեղն է որ երկրորդ վկայութիւնը կը հայթայթէ՝ ա՛յս նշանակութեան։ — — —

Կը յուսանք թէ այս բառաքննութեամբ կրնայ՝ քիչ շատ մեկնուած նկատուիլ այս 8րդ բաւական խառնակ հատուածը։ Աւելին՝ ժամանակին կը թողունք։

## 9.

*Գեստրաս*[1] *զրէից*[2] *եւ՝* *խորդապար*[3]
Որսորդ [illegible] եւ՝ խորտապար[ող]

*եռանկիւնեաց* *օղահատեալ*[4] — *կա-*
եռանկիւնեաց [illegible] եւ կա-

*ռաչմամբ:* *Հիկէն*[5] *գեստրաս* *հոպոտեալ*[6]
ռաչելով: [illegible] [illegible] [illegible]

*ըմբարհակեալ*[7] *կոկոզան[ա]ս*[8]. *սակայն*
[illegible] [illegible]. սակայն

*ոչ* *մակթեւիս*՝[9] *ապուսեալ*[10] *միայն*
ոչ [illegible], [illegible] միայն

*աճիւնիցն*[11] *ծասքման*[11]:
աճիւնէն ծասքելոյ [= մեռնելոյ]:

1. *Գեստրաս* = *որսորդ:* Անծանօթ կազմութեամբ բառ մը (մեզի ծանօթ հին յն. θηρητήρ, θηρευτής, θηράτωρ, կամ նոր յն. κυνηγάρης, κυνηγός բառերուն աննման), զոր 4—5 անգամ կը գործածէ Մագիստրոս. այսպէս (Մկս. էջ 236) "Գեստրաս դատարկայած.„ "Եկն գիշերաբուն, սպիտակափառն գեստրաս„ (Անդ. էջ 234), եւ հոս 2 անգամ: Հբռ.՝ "Վարք հարանց„ էն ունի վկայութիւն մը. "Զենովբոս՝ այր գեստրաս,

որ թարգմանի “օրօորդ„ (ձեռագիր)։ Նոյնպէս ԱԳր. եւ Երմ. ունին “գէօփրէօ = որսորդ„։

2. Գրէից = կռնկաց [կռունկներու]։ Գրէօ՝ շատ լաւ նկատած է ՀԲռ. թէ լատ. grus բառն է. բայց յն. ղէրանէօ ինչպէս կը գրէ՝ յամենայն դէպս սխալ է. կայ յն. այս նշանակութեամբ միայն γέρανος, γεράνιον։ Գրեթէ ամէն հնդեւրոպական լեզուներու մէջ նոյն է այս բառը, գղ. grue, գերմ. Kranich (հբգ. chr-an-uh), լիտ. ǵer-vi, փռլ. zer-avi։ Հայերէն միայն այս տեղս կը գտնենք գրէ-գրէօ ձեւը. սովորաբար կ'անուանուի խօրդ (նաեւ խօրն). տ. Եզն., էջ 174. Ագաթ. վենետ. 1835, էջ 486. վեցօր. Բարս., էջ 163. Բուզանդ էջ 111 եւն։ Հին բառ է նաեւ կռունկ, գործածուած վեցօր. Բ., էջ 163։ Մագիստրոս պահեր է մեզի այս գրէ-ք ձեւը, որուն արմատն է gra = կարկաչել. կը կարծենք թէ կռունկ ձեւը կը նոյնանայ պարս. كلنگ = կէ-լէնկ ձեւին հետ (Գէ. Դպ. Պրս. Բ.)։ ՍՌ. բոլորովին կը խաթարէ այս բառը, շրջելով զարմանալի նախադասութեան մը. “խորթաւոր եռանկէանց գրէցէ քեզ„։ Իւր տեսած օրինա՞կն այսպէս էր, թէ իմաստ մը յարմարել ուզեր է։ Բաց ի Անտ. եւ Վիեն. օրինակներէն, մեր առջեւն ունեցած միւս բնագիրները վրիպակաւ գրած են. Մկս. = “գրէ իցես„. Էմ. = գրէէցէս (եւ տարբերակ՝ գրէէցէ ես) էջ 209. Արիստոփանէս (“Հաւեր„ 8 տեսիլ) ունի.

"Երբ կռունկն կը սուրայ (= մեր բնագրի՝ օդահատելը) բարձրաձայն կրկռալով (= չափաւորմամբ) լիբէական սահմանները . . . ."

3. *Խորդապար* = *խորդի պէս պարող* (եւ ոչ խորթաքայլ)։ Մագիստրոս կը յիշէ հոս կռունկներու՝

4. *Եռանկիւնեաց* = *Եռանկիւնի*՝ √ այսինքն եռանկիւնի ձեւով պարը, զոր կը կատարեն այս թռչունները դարձդարձիկ գաղթելու ատեն (= "խորդք տողին ի գնալն իւրեանց" Առ. Մխ. Գօշի, վենետ. էջ 117)։ Այս թռչնոց պարին նմանողութեամբ՝ γέρανος = խորդի պար կ'անուանուէր՝ կաքաւ մը, զոր կը կաքաւէին մարդիկ (տ. Luc. de salt. 34 եւ Plut. Thesaus. 21). Բայց հոս կը ստիպուինք բանասիրաց ուշադրութիւնը հրաւիրել որ հատուածիս իմաստը թոյլ չի տար՝ "խորդապար"ը՝ իբր գոյական առնելու, այլ իբր բայանուն՝ պարող, այսինքն՝ "եռանկիւնի ձեւով խորդի պար պարող կռունկները." որոնք կրկչելով օդը կը կտրեն (= օդահատեալ) ու կը գաղթեն։ Մագիստրոս նման կերպով ըսած է "անռահավար պարայածեալ" (= "օդահատեալ"ի պէս) (Մկս., էջ 237)։

Ուրեմն այս 4 թուերն ամփոփելով կ'ունենանք. "Որսորդ ես եռանկիւնաձեւ խորդապար [պարող] կռունկներու, որոնք կա-

ռաշմամբ օդը կը կտրեն ու կ'երթան։" Ի՞նչ նմանութիւն է այս. Մագիստրոս ըսել կ'ուզէ, "խելքէդ վեր բաներու ետեւէն ես ինկեր, ուզեր ես բարձրէն թռչող կռունկներու որսորդի պէս՝ կռունկներ որսալ, բայց....։ Շարունակութիւնը յաջորդ բառերու մեկնութեան մէջ թող ամբողջացնէ ընթերցողը։

5. Հիկէն = իբրեւ, որպէս. շատ ծանօթ "Անյաղթեանց" բառ, շատ մը ընկերներ ունի՝ էջ..., որոնք են։

6. Հապտեալ = ծածկեալ[կեղծեալ],
7. Ըմբարձակեալ = ապարասանեալ,
8. Կոկոզանաս = մեծամտես:

Այս 3 թուերը կցեցինք իրարու, վասն զի կերպով մը իրարու կցած է նոյն իսկ Գր. Մագիստրոս "Մրգուզ փանաքի" կտորին մէջ, Մկս. էջ 237, ասոնց նոյնանիշ ու համիմաստ բառեր շարելով, այսպէս "որջասոյզ եւ գրուանող, ծեքեալ, նոծեալ, ապազոնեալ"։ Եթէ իրաւունք ունինք՝ այս երկու բառաշարքով գիրար լուսաբանելու, այն ատեն մեկնած պիտի ըլլանք ծե+ել բառն ալ իբր ծ-ծկել նշանակող։ Եւ նոր բան մը չենք ըսեր երբ պնդենք թէ ծե+ելին՝ ծ-մ-ծ-ել իմաստն ալ ի վերացեալն՝ իբր "բանի մը բուն, հարազատ իմաստը պահելով, ծ-ծկելով, ուրիշ իմաստով ներկայացնել" կը նշանակէ։ Շատ կը սիրէ Մագիստրոս այս ծե+ել բառը, տես՝ "Մրգուզ փանաք ծրդեալ, ծե+եալ, ան-

հոյծ ոգեալ„ են (Մկս. էջ 237). իսկ ճռ-մռճռել նշանակութեամբ տես՝ "Եւ ահա ոչ ճեքարանէ քեզ՝ մակաբուսեալն վաղնջուց գեղեցկուղէշն գի„ (Մկս. էջ 221). համեմատել՝ "զոր բարբառն եբրայական իբր ճեքելով զբանն„ (Պտմ. Թվ. Արծ. Կ.Պ. էջ 17): Բայց համեմատութեան առած նախադասութեան "որջասոյզ եւ գրուանող„ (= ճռճկող) բառերը կը փարատեն այս նկատմամբ ամէն տարակոյս:

Ուրեմն հոտոտելի նշանակութիւնն է հոտ ճեքելու պէս. ճռճկել: ՍՌ.ի բառագիրքն հոս ալ զմեզ անօգնական կը թողու եւ — ըստ իւր սովորինակ տեսութեան՝ կը փոխէ Մագիստրոսի այս հատուածին ընթերցուածը. կը գրէ "Հոտոտել, կեղծեալ բառ է, պատրաստեալ յօժարեալ (!) "Գրեցի քեզ հոտոտեալ կոկոզանս„ (վերջին -ղանս աւրուած ի վերջոյ եւ սրբագրուած): Սովորական հոտոտանք բառն ալ ունի ըստ ՀԲռ.ի կէղծռուռ-րէան նշանակութիւնը. (տես անդ.) Հոտոտանք = պաճուճանք՝ զարդերու մէջ ճռճկռելէն տարբեր իմաստ չունի արդէն:

Բովանդակ "Գամագտական„ին վրայ լոյս կը սփռէ այդ հոտոտիլը. վասն զի Կիրակոսյոնն, առ որ կ'ուղղուի նամակը, Մագիստրոսէն ճռճռ-կ կ'այպանէր զինքը (ի բաց առեալ վերոյիշեալ հրապարակական դէպքը՝ թէ դիւրըմբռնելի են գրածները, եւ թէ կը հասկնայ անոր ամէն գրածները): Լսելուն պէս

Մագիստրոս՝ իւր ինքնապաշտպանութեան սովորական զէնքին՝ "կարծրակուռ,, ոճի կը դիմէ, երբ որսորդ ծածկապէս գործող հակառակորդն ըմբերանելու։ Առ այս համեմատել Մագիստրոսի հետեւեալ վկայութիւններն. "եւ . . հմայից հողոտանոյ հետամուտ լինել քննութեամբ քայքայել,, (Մկս. էջ 52). — "Մեղկեալ հողոտանոյ . . . շոյաղբելն միմեանց" (Անդ. էջ 35)։

7. *Ըմբարհնակեալ = ապարասանեալ* [ինքնահաւանութեամբ անզուսպ լեզուագարութիւններ ընելով]։ Կը յիշէ այս նշանակութիւնը ԱԳր. իսկ Երմ. կը գրէ՝ "ըմբար'ակել = ապարասել,, որ պէտի ըլլայ յայտնապէս "ապարասանել" կամ "ապերասանել"։ Այս կերպ գրութիւնը միայն այս երկու բառագիրքերու մէջ կը յիշուի։ Զատ է՝ ըմբարհակեմ, ըմբարհնակեմ ձեւը՝ որ նոյն նշանակութիւնն ունի եւ շատ տեղ կը յիշատակուի. տես նաեւ ՀԲռ. եւ ՍՌ.։ Կը գտնենք այս ձեւով ալ առ Մագիստրոսի՝ "ճահճեալ ղամեկեալ ըմբարհակեալ" (Մկս. էջ 237). "Զի յանկարծակի ըմբարհնկելով դժոխախեռ յախորտանօք,, (Մատեն. Խորեն. Վենետ. էջ 453)։

8. *Սոկոզան[ա]ս = մեծամիտես:* Առանց իմաստի այլայլութեան կրնանք բնագրին կողմնակի ձեւն ալ պահել. բայց այն ատեն պիտի ստիպուինք ըմբարհնակել չէզոք բային՝ ներգործական բայի իմաստ տալ, երբ "ա-

պարասան բարբանջել„ “լեզուագարութեամբ կոկոզանքներ ընել, մեծամիտ խօսքեր ըսել[1]„ ։ Քանի որ դժուարըմբռնելի բնագիր մը կը վերահաստատենք, չենք քաշուիր այս փոքրիկ փոփոխութիւնն ընել, բնական է առ տեղեաւ նշանակելով փոփոխութեան պատճառները։ Առաջին պատճառը կը գտնենք՝ անընդմիջական նախընթաց տողերու մէջ. իսկ երկրորդ պատճառն է հետեւեալը. Ագր. եւ Երմ. կարծես՝ ինչպէս վերն ըսինք, Մագիստրոսի այս դժոխըմբեր բնագիրը լուծելու համար գրած են միայն. արդ թէ՛ Ագր. եւ թէ՛ Երմ. միայն կոկոզանաւ բայը կը յիշեն եւ ոչ “կոկոզանք„ գոյականը։ Հբռ. եւ ՍՌ. ունին “կոկոզանք„, բայց իբր գործածութեան տեղ երկուքն ալ միայն եւ միայն Մագիստրոսի այս խօսքը կը բերին։ Ընդհակառակն Մագիստրոս կոկոզանաւ բառը կը գործածէ եւ էջ 237. Երրորդ պատճառ. կոկոզանսսակայն ձեւին եւ կոկոզանասսակայն ձեւին մէջ շատ մեծ է գթելու վտանգը, մանաւանդ այսպիսի դժուարիմաց հայերէն մը կարդալու ատեն[2]։

---

1 Բայց ի՞նչպէս չզարմանալ երբ այս բացատրութիւնն ալ գրեթէ բառ առ բառ առնուած կը տեսնենք Արիստոփանէսէն ։

“Կրնաս զիս պատճառաբանութիւններով յաղթահարել, բայց միշտ կոկոզաբանութեամբ կոտրէն կը թափառես„ Արիստոփ. “Պղուտոն„ Դ. չի՞ յիշեցներ “Հիկէն գոռ հայր կոպանեալ թափառական կոկոզացեալ„ Մկս. էջ 237.

2 Կալիսթենեայ գրքին մէջ իբր յաւելուած կցուած Խաչատրոյ Կեչառեցւոյ բարառնութեանց մէջ, կայ՝ Կալիս-

9. *Մակթելիս = բարձրանաս [վերամբառնաս, վերաթելիս եւն եւն]:*

10. *Ապուսեալ = մերժեալ [դատապարտեալ]:* Սովորաբար իբրեւ «ժխտել» կը գործածուի, ինչպէս Ստ. կ'ըսէ՝ իւր ոճով «տղ-ուէլ այսինքն տղ-ուէլ»: Կը թողունք իրեն այս մեկնութիւնը. միայն «Դ. Անյաղթէն», (վենետ. էջ 431 եւ 475) եւ այս գրոց նման ուրիշ շատ տեղերէն գիտենք որ «ժխտել» կը նշանակէ: Բայց այս տողերուս իմաստը ճիշդ մեկնելու համար պէտք է «մերժել» նշանակութիւնը գտնել, եւ գտանք «Պղատ. Տրամախօսութիւն Մինովս» ի մէջ (վենետ. էջ 408 որ սովորաբար Մագիստրոսի թարգմանութիւն կը համարուի եւ է.) ահա վկայութիւնը «ըստ այնոցիկ պարտ է հօրն զորդին տղուէլ եւ ի բաց քարոզել»:

11. *Աճիւնիցն ծաւքման = զաճիւնս ծաւքելոյ* [ծաւքման աճիւնիցն դատապարտիլ, այս ինքն ժ--նէլ]: Այս 9դ հատուածին վերջին երկու բառերովը՝ որ պահուած են շուրջ 900

---

թենեսի լեզուէն բոլորովին օտար եկամուտ լեզուաւ հետեւեալ կտորը. «զմտաւ ածեմ զդեգերումն մոլորդրական վիպասանութեանց յորժամ էի առ ճեմականսն ստապերացի ի սպաս բանեղէն եւ կորովամիտ խոխողմանցն ի մայրն իմաստութեանն» եւն, էջ 191: Հարեւանցի իմն յիշատակենք որ այս ապիկար ողբերու վերջին մասը՝ իբր թէ «Աղեքսանդրի խրատներ առ բարեկամս» բոլորովին կցկտուր, եւ մանաւանդ վերջին երեքը կարծես Մագիստրոսեան դարու լեզու են: Ընդարձակ տեղեկութիւններ ուզողը կը ղրկենք Հ. Յ. Տաշեանի «Սուտն Կալիսթենեայ ուսումնասիրութեան», էջ 21. եւն եւն:

տարիներէ ի վեր՝ այս անհասկանալի համարուած չափաբերական նամակին մէջ, Մագիստրոս իւր հմտութեամբը զարմանքէ ի զարմանք կը գլտորէ զմեզ, վասն զի արդէն գրեթէ 9 դար յառաջ հայացուցած է յունարէն ոճ մը, որ դարեր ետքն անցած է յունարէնէ լատիներէնի եւ ասկէ գաղղիերէնի ու գերմաներէնի, թէպէտ վերջինս իւր յատուկ բացատրութեան փոխելով, ins Gras beissen = "խոտին խածուածք տալ„: Արդ Պր. Նորայրի գաղղ. բառարանն ունի խա-ծնել զփոշի = mordre la poussière = (պատերազմի առեն) մեռնիլ բացատրութեան դիմացը, բացատրութիւն մը՝ որ նիւթական թարգմանութիւն է գաղղ.ի: Արդ "փոշին չի խածնուիր„ երկիրը հողը (la terre) կարելի է խածնել. բայց Մագիստրոս ունի աւելի ճիշդ՝ փոշին (= աճիւնը ըստ ԱԳր.ի) ծաքել, ծամել, որ շատ աւելի յարմար է. եւ ապահով ենք՝ եթէ գաղղ. բառագրոց հեղինակին յառաջագոյն ծանօթ ըլլար Մագիստրոսի այս բացատրութիւնը, այսօր պիտի գտնէինք զայն նոյն բառագրոց մէջ: Արդ Մագիստրոս հայացուցած է՝ οὖδας, γαῖαν ἑλεῖν ὀδὰξ կամ որ գրեթէ նոյն է՝ ὀδὰξ λάζεσθαι γαῖαν = զհող, զփոշի ծաքել, ծամել: Պատերազմի առեն երեսի վրայ իյնալ (կամ մեր ռամկին՝ "քթին բերնին իյնալ„) "երեսն ու բերանը փոշւոյ մէջ թաթխուիլ„ ըսել է, այսինքն մեռնիլ: Մա-

գիստրոս՝ Կիրակոսի եւ իր միջեւ կատարուած մրցումը պատերազմի կը նմանցնէ։ Աւելորդ է ըսել որ այս մեր անձնական հետազօտութեան արտադրած արդիւնքն է. թէ Ագր., թէ Երմ., թէ Հբռ. եւ թէ Սռ.՝ լուռ կը մնան յայսմ. վերջինս ըստ իր բարի սովորութեան կը խանգարէ քան կը յարդարէ իմաստը, վասն զի ըստ կամս նոր միտք մը կը ստեղծէ. "Գրեցի քեզ ապուսեալ աձիւնիցն ծասքման„։ Բայց ի՛նչ զարմանալիք. Հոմերեան այս ոձն ունի եւ Արիստոփանէս. "Այսօր իսկ հող պիտի ծասքէք„ "Ասպետներ„ Ա. Ար. 1 տեսիլ. "Թող Արամազդ զքեզ յաձիւն ջախջախէ„ (Անդ) եւն եւն։

Ամբողջ այս 9րդ հատուածը մեկնելու ատեն մեր կրած թարթափումներն ու խոնջանքը կը մոռնանք՝ — եւ ապահով ենք որ Մագիստրոս պիտի չյանդիմանէ զմեզ՝ "մի յածուն խոնջմամբ[1] տարակուսեցիս տարախոհական մտածութեամբ„ (Մկս. էջ 112) —, յիշելով միայն որ յաջողեցանք՝ ամբողջացնելու այս հատուածին 4 թուին (տես) մէջ՝ առկախ թողած նախադասութիւնը. աշա՛ ուրեմն կախման կէտերու ամբողջացուցիչ մասը. "պէտք չյաջողին եւ գէտէն պէտք կատարին„։ Իրաւունք չ'ունենար Մագիստրոս, էջ 237 մեզի ըսելու. "Գեստրաս դատարկայած՝ ապա-

[1] "Ո՛հ, ագռաւուն հետեւելով, ես դժբախտս, տարուբերէն կաղեցայ„ Արիստոփանէս, "Հաւեր„ 1 տեսիլ։

շնորհաց բախտի հասեալ„ = մոլորած որսորդ՝ անյաջողներու բախտին վիճակակից։

## 10.

*Իրազեկ*[1] *զինէն* *ծանեայ*[1], *զի*
Իրազեկ զինէն գիտացի [= համոզեցայ]; զի

*լիցիս* *իքալի*[2] *(ի)* *կարծրակուռ*
լեցես ողբալի ի դժուարին [[illegible]]

*առասութեան*[3]՝ *իբր* *ի* *կենաւոտէ*[4] *եւ*
խօսք՝ որպէս ի նետէ ե-

*ի* *կեստայ*[5] *կոնղակէ*[6] *վարատեալ*[7],
ի կէտաւէան նեղակէ . հալածեալ,

*անհալելի*[8] *համաղեռ*[9] *կարծեցեալ*[10]:
անյաղթ [illegible] համարեալ։

1. *Իրազեկ զինէն ծանեայ:* «Գիտացի իրազեկ կամ սերտագոյնս»։ Մեկնելու պէտք չի մնար այս նախադասութիւնը։ Բովանդակ պարբերութեան իմաստը ցոյց կու տայ այն վստահութիւնը զոր ունի Մագիստրոս իր անձին վրայ, թէ իր խրթին գրածներովը հակառակորդին գաղտնի հակառակութեան վրայ յաղթապանծ պիտի հանդիսանայ։ «Համոզուած է» ասոր։ Իր նամակներէն միոյն մէջ (Մկս. էջ 214) կը սպառնայ որ իրեն

խոստացուած ձկերն ղրկուին իրեն, ապա թէ ոչ՝ այնպիսի՛ որոտալից բառեր կը շարէ՝ — "թէ ոչ՝ ճահեցուցից քեզ ճարտասան բանիւք ճայթմունս առասութեան„ — որ կը ստիպուի թղթակիցը (Մամիկոնեան Իշխանն Թոռնիկ) ո՛չ թէ միայն "այլ եւս համ չառնուլ կարմրախայտ ձկերու պարարտութենէն„ (= ոչ քաղցրացի է կոկորդս եւ պարարտութիւն կարմրախայտից), այլ ուրբաթ օր կերած "զամենայն զեռունս եւ զըզիզսն եւ զճճիս...՝ տաղտկացեալ ախոնդեացդ զօրէն կոռնեայ ծայթքեալ արտաքս բերցես„[1]: Համոզուած է Մագիստրոս թէ բնաւ դժուար չէ իրեն՝ — քանի որ այսպիսի "արհեստի„ եւ գիտերու մակացութեանց հասած է, — յստակ կերպաձեւեալ բառերը՝ "հոյծ եւ խոշոր կերտացուցանել սակս լսողացդ„, որպէս զի "լպրծոտ, յղկեալ եւ ապակատարագ„ խօսքերուն վրայէն սահելով իրենց մէկ անդամը չկոտրեն: Ուզած ժամանակ "դիւրահաս կատարէ զոտանաւորս„ ..: Եւ Պր. Կոստանեանի հրատարակած բոլոր նամակները վկայ են, որ Մագիստրոս իրաւունք ունի իւր գրելու կերպին վրայ՝ այս յանձնապաստան վստահութիւնն ունենալու,

[1] "Այնպէս մը կ'ընեմ որ ձայնաքարով կոկորդդ կը խողխեմ եւ իմ ինչքս դուրս կը փսխես„ Արիստոփանէս "Պղուտոն„ Գ. Ար. 3 տեսիլ. կամ ուրիշ տեղ մը՝ "Բոլոր վաստկածներդ (կերածներդ) նորէն դուրս տուիր„ Ա. Ար. 3 տ.

որովհետեւ գրեթէ իրմէ յառաջ գրուած բոլոր գիրքերը կարդացած է (գոնէ այսպէս կը վկայէ ինքը, ինչպէս մեր հետազօտութեան սկիզբները տեսանք), որոնցմէ իբրեւ զէնք պատրաստած է իր ոճը՝ ոչ թէ միայն իր թղթակիցները, այլ նաեւ ապագայ ընթերցողներուս գլուխը ճաթեցնելու եւ ըղեղը խախտելու: Զինուորական մը յիրաւի, որ յատուկ զէնքեր գործածել գիտէ թէ՛ ձեռքով եւ թէ՛ մտքով եւ թէ՛ լեզուով: Բայց այս տեսութիւնս, որուն նկատմամբ կրնան հատորներ գրուիլ, կը շեղեցնէ զմեզ մեր առաջադրեալ նպատակէն:

2. *Իբալի* = *ողբալի*: Ա. Մեզի ծանօթ բնագիրներն ունին՝ ի բալ ի (Մկս.), ի բալի (ՆԲ. Իմ. եւ Վիեն.) Անտ.ը ունի միայն ի բալի, որ ամենաճիշդն է. — պարբերութեան իմաստին համար. Բ. որովհետեւ ԱԳր. եւ Երմ. ունին «ի բալի = ողբալի» մեկնութիւնը: Կը լռեն ՍՌ. եւ ՀԲռ.: Բայց այսչափ վկայութիւններ բաւական չեն դեռ մեր միտքը բոլորովին հանդարտեցնելու՝ վանելով ամէն տարակոյս, Գ. որովհետեւ «ողբալի, խեղճ» ի՞նչ բանի մէջ. «ի կործանման առա- -փութեան[1]»: Բայց երկու ի իներու առընթեր

---

1 Սխալ ընթերցուած է «առափութեան» բառը. (տես քիչ մը վերը «Ճահեցուցիր քեզ ճարտասան բանիւք ճայթմունս առափութեան» (Մկս. էջ 214). Նոյնպէս «եւ զամենայն ի յայտնէ ախտից քացախուտ առափութեան (հոս՝ անուանակոչութիւն, մակասութիւն)» (Պղատ.

կացութիւնը ձեռագրաց մէջ միոյն զեղչումը յառաջ է բերեր։ Գիտենք որ շատ սովորական երեւոյթ է այս։

Բ. Իսկ եթէ այս ամէն պատճառներով չգոհանանք, կրնայ Երկրորդ մեկնութիւն մը տրուիլ. "ի բալի" = մշուշի, մէգի մէջ. այսինքն "կարծրակուռ առասութեան մշուշին մէջ"։ Բոլորովին անհաւանական չէ այս մեկնութիւնն ալ. մանաւանդ որ Բ—Լ բառն ալ "մթագնած" ալ կը նշանակէ. սակայն տեղ մը չենք գտներ ի Բ—լի զատ զատ գրուած։ Երկրորդ. այս ի "մթան" մեկնութեամբ պայծառ չ'երեւար հետագայ "անհպելի" = "բարձրամիտ, բարձր, գոռոզ" գաղափարն, որ աւելի ազդու հակադրութեան մէջ ցոյց

---

Տրամախ. Եւթիփրոն, Վենետ. էջ 140)։ Նոյնպէս տես տ—ե—ել բայը. "դարձեալ անտուստ կարիցէ միայն զայս տ—ե—ել = կոչել". (Պղ. Տրմխ. Եւթիփ. էջ 118 եւն եւն. "ասի... յոլովագոյնս սիրել զայլոցն պու ետեալ տ—ե—Բ—ն" (Մկս. 49.) "այսօրիկ առաքելոցն տ—ե—Բ—ն+" (Անդ. էջ 199 = այսպէս պիտի ըսեն առաքեալք). "զայլսն թողցուք զի երկարագոյն գործէ զ—Բ—ն" (էջ 95). "եթէ յ—Բ—նն արգելու միայն" (էջ 83)։ Շատ անգամ կայ գործածուած՝ առասութեան իմաստով տ. տ—ն—Բ—ն. այսպէս. "պատասխանեօք զքեզ եւ իմով իսկ տ—ն—Բ—մբ արծարծեմք" (էջ 144). Բ. Նե—ն—Բ—ն եւ Նե—Բ—ն (էջ 131). Գ. տ—ոյ—Բ—ն. "ոչ կամիմք տակաւին յ—ոյ—Բ—նե. որ առաջի կայ, արտաքոյ մղիլ" (էջ 172). "այլ տ—ոյ—Բ—նն նուագերգութեան սաղմոսելոյ ի Հոգւոյն տու չութենէ" (էջ 175)։ "Մինչեւ յայնմ տ—ոյ—Բ—ն (որ գրեցեր ասել համակրօն զմարգարէիցն դասս՝ Մահմէտի [հոս՝ նախադասութիւն]" (Մկս. էջ 185)։ Կարծենք ըստ բաւականին աւելի են այս վկայութիւններն "առափութիւն" բառը ջնջելու եւ տեղը "առասութիւն" տնկելու։

տալ կ'ուզէ Մագիստրոս, «ողջոյն» դրութեան մատնելով իր «գոռող» հակառակորդը։ Այսպէս թէ այնպէս մեր վերահաստատել ուզած բնագիրն է «իբալի» (կամ «ի բալի»), բայց ոչ երբեք՝ ցայժմ իբրեւ ընդհանուր՝ հրատարակուած «ի բաշի» կամ «ի բաշ ի»։

3. Կարծրակուռ առասութիւն = դժուարին բան [դժուարահասկանալի ասացուած], որ մեկնուած է արդէն նախընթաց բառին քննութեան ժամանակ։ Միայն մտադիր կ'ընենք որ այս «կարծրակուռ» բառին համապատասխանող բազմաթիւ բառեր ու դարձուածքներ ունի Մագիստրոս՝ իբր զանազանութիւն։ Շատէն քիչը յառաջ կը բերենք. «այսբար մեզ զմիտսն, որ քողարկեալ կայ ի մէնջ, ծածկեալ եւ խրթնացեալ ի խորինս ոսկրոտ անուտելի (գրութիւնս)» (Մկս. էջ 128). «ոչ նահանջի բան մեր ծալեալ ծրարեալ կամ ի ծամելի կառուցեալ» (Անդ, էջ 50). «ոչ թողեց չասել զտենչալին քեզ կարծրագոյն եւ ոսկրոտն պղատոնական եւ հռետորաբար եւ պուետիկոսութիւնս անքծելի եւ անշօշափելի շաղկապութիւնս» (Անդ, էջ 203). «անքէղ եւ անքծական» (Անդ, էջ 236)։ Դանիէլ երաժշտին գրած նամակին մէջ (Մկս. էջ 124) ինքն իսկ կը խոստովանի, թէ կը յոգնեցնէ թղթակիցը. «գիտեմք զի տարակուսանս իմն սակաւ առաջի ձեր սփռեցաք. զի կաշկանդեալ կղկռոտ եւ ընդելուզեալ ատտիկեցի տիմիական յիմունս

եպիդիմիական մակամտածութենէ„ սակայն կը խոստանայ յետոյ փարատել այս տարակոյսը։

4. Ի կենատէ = ի նետէ։ Բոլոր ձեռագիրներն ունին միաբան ի նետէ, որ՝ ինչպէս պիտի տեսնենք, անդէպ է հոս։ Նախ. Մագիստրոս իւր ժամանակին հայ գրողներու սովորութեան համեմատ՝ գրեթէ բոլոր նամակներուն մէջ՝ նմանաձայնութիւնն (allitération) այնպէս կը սիրէ, որ երբեմն մինչեւ 3—4 տող[1] կը շարունակէ։ Արդ նոյն իսկ այս "Գամագտական„ին մէջ 7—8 տեղ կը գործածէ

---

1 Օրինակ՝ ամբողջ այս նամակները. բայց ի մասնաւորի էջ 133, ուր Լ գրով կը սկսին 4 տողեր. Գ գրով 3 տողեր (էջ 134), Բ գրով՝ 4 տողեր, Ն գրով՝ 4 տողեր։ Բայց աւելի- մարսելի օրինակներէն քանի մը հատը կ՚ուզենք յիշատակել. "Եւ մերոյս հաւ ի հիացման եղ[կ]եալ հրացեալ խորհրդով հաւանիմ ինձ միայն հնարս զհարկաւորն հարցանել զհարցն իմ սահման„ (Մկս. էջ 61). "(իբրու առ ի շաւղոմն յարուցանեն զԱմուէլ) կամ շուայտական ըմպարացն շարս շամանդաղեալ շրջանան ի վերայ մեր„ (Անդ, էջ 67). "Ակկարոմնեան ծանծիցն ծեծծերելով ծեծեալք ծոռոմաքանեն զծաշակաց առիւծուն„ (Անդ, էջ 132). "Վարդապետն քո ծայրագոյն, ի ծայր ծարաւի ծորեալ„ (էջ 209). "Հարդապետն ի հարդիկն հաշանաւորեալ հաղփաղեաց„ (էջ 210). "Ծխմեալք ծեկծեկեալք ծիօրէն ծողորտեաց (էջ 218)։ Քանի մ՚օրինակ ալ "Դ. Անյաղթէ„. "Պաշտելի է մեզ եւ պանծալի բառ Պաւղոսի պարծել եւ ի պատուական պսակն Յիսուսի„ (Դ. Անյ. էջ 101). "Բացայայտեալ բոյ բարեաց բարեարապէս բարուց քոյ (Անդ, էջ 101) = "Բարերարութեանն բարեաց ի բարերարէն արժանի գտան„ (Յովհ. Պատմ. Մոսկ. էջ 188) եւն եւն։ Եթէ այս նմանաձայնութեանց պարզերն ու բաղադրեալները՝ մեր հաւաքածոյքէն ամբողջացնել ուզենք, պատ հատոր մը գրելու է։

իւր սիրական — խաղը[1]: Ահաւասիկ ապացոյց մըն ալ հոս՝ "ի կարծրակուռ... ի կենատէ եւ ի կեստեայ կոնդակէ„: Ուրեմն կ'արդարանայ մեր "կէնտրէ„ բառը: Երկրորդ: Ցայժմ ընդունուած "ընտրէ„ բառը ուրիշ տեղ գոյութիւն չունի. կայ ընէ (Թուոց Գիրք. Զ. 4—5, Դաւ. Անյաղթ. էջ 597) եւ ընահոտ (Ոսկ. Պւղ. Բ. Հտ. էջ 446), բայց թէ խաղողն ու կուտը այս "միցութեան մէջ„՝ յորում երկու "հակառակորդք„ կը միցին իրարու հետ, ամենեւին չի կրնար գործ ունենալ, քաջայայտ է: Եթէ գինեգործութեան կամ այգեգործութեան վրայ ըլլար խնդիրը, ապահով ենք որ Մագիստրոս պիտի չթերանար ընէն կամ ընահոտը գործածելու:

Խոստովանինք որ այս "ի թնատէ„ ի սկզբան անդ զմեզ շա՛տ աշխատցուց: Ձեռա-

---

[1] Այսպէս. 1 Հատուած. "... փառի փարակոյս փատանական փրոհել ղփարբեղունս . . . փոր-բանելով եւն (տ. "ՀԱ.„ էջ 205).
2 „ „ ...« փարակացուցանեմ . . փար-փասցիս փարախորհ... փրամատա-կան.. փախտակ փոգորել (էջ 207).
3 „ „ ...խսկապէս խրածել . . խրողաբար (էջ 208).
4 „ „ ...ծեմարանի ծմղծելով ծոխառո-ցեալ ծածանչաւէտ (էջ 209) եւ մ՝ մեղ մակառ մունչ մախիղ (էջ Անդ).
6 „ „ Ընրէք զնրողակութիւն փրոհիցես եւն եւն (էջ 210).
7 „ „ Համեմատէ 7ի մէջ բոլոր մով սկսած բառերը:

գրաց համեմատութիւններ[1] ըրինք, բայց "Թնատը" կը մնար անխախտ իւր տեղը։ Սակայն հարկ էր՝ կամ այս հատուածին մեծ դժուարութեամբ յերեւան հանուած լուսապայծառ (գոնէ մեզի համար) իմաստն ի բաց քեցել, եւ կամ "Թնատ"ը իւր բուն ձեւին վերածել։ Ագր. եւ Երմ. այս դէպքիս մէջ մեզի զլացան իրենց խորհուրդը։ Միայն Երմ. ունի նմանաձայն՝ կէնոֆ բառ մը, սակայն կը նշանակէ "ստացուածք, կենդանագիր". ստիպուեցանք հանդարտիկ իւր տեղը թողուլ այս բառը։

Եթէ այս "կէնոտ" բառին՝ մեր մտքին մէջ ծնանելուն կերպը (Werdegang) գրի կ'առնունք, ջատագովելու համար է այն՝ ոչ-ազնիւ կերպը, որով հնադարեան Թնատը իւր տեղէն կը խախտէինք, տեղը դնելու համար կէնոտ մը։ Յախուռն գործած չենք, կարծենք։ Սակայն ուրիշ դժուարութեան մը բախեցանք։ Այս կէնոտ բառն՝ որ մեր մտքին մէջ ծնունդ առած էր Թնատ ձեւը մանր քննած ատեննիս, չկար ոչ Հին եւ ոչ Նոր բառագիրքերու մէջ. եւ սակայն հարկ էր որ՝ գոնէ ըստ ուղիղ ձեւին, գործածուած ըլլար, քանի որ կէնոտ՝ "կեանք կտրող, հատանող", կամ

¹ Նոյն իսկ Վենետ. Ց. Մխիթ. Հարց ձեռագիրներն՝ այս բառիս համար, խորհրդի կանչեցինք Գեր. Հ. Ց. Ծ. Վ. Թորոսեանի ձեռօք, որ ինքնաբերաբար հաճած էր Պտ. Նորայրի ալ կարծիքն առնուլ, վերջինս դեռ "Թնահատ կը կարծէ եղեր "է Թնատէ"։

"կեանքէ զրկուող"[1] շատ կը յարմարէր Մագիստրոսի գրչին ու ոճին։ Մեծաձայն Εὕρηκα! մը եղաւ արդիւնքը մեր խուզարկութեանց։ Ինքն իսկ Մագիստրոս գործածած էր այս բառը եւ — նոյն իմաստով։

"Մարդն է զէտ ծառ, կեանքն է առատ,
Մահն առ արմին եդեալ հաստատ,
Որ մի առնէ զնա կենաւոր,
Տանի յատեան վեհին ի դատ"
(Մկս. էջ 241)։

Կէնաք բառին գոյութիւնը խախտեց ուրեմն ընաքը. կը մնար մեր կողմանէ յաղթել ուրիշ երկու դժուարութեանց։ Կն = Թ ձեւերը կրնա՞յին շփոթուիլ իրարու հետ։ Ձեռագիրներ՝ մանաւանդ նոտրագիր եւ կամ շեղագիր գրուածներն, եթէ իրարու համեմատուին, իսկոյն հաստատական պիտի ըլլայ պատասխանը. բաւական է համոզուելու համար համեմատել Մինխէնի Մելգոնեան օրինակէն՝ (Մկս. 24) յողնեօցէ, բառը, որ գրուած է յակնացի, բայց շատ դիւրաւ կրնայ կարդացուիլ եւ "յոհէօցէ"։ Նոյնպէս՝ (Անդ. էջ 24՝ վարէն երկրորդ տողը).

---

[1] Պարզ հետաքրքրութեան համար կը յիշենք, որ եթովպացերէնի մէջ "Կարգ մեռելոց" Office des morts, կը հնչէ Maçḥafa gĕnzat (մասհաֆա գենզաթ)։ Անտարակոյս պարզ փոխառութիւն մը հայերէն կէնաք բառէն ինչպէս վկայեց եւ մեր բարեկամը՝ քաջ եթովպագէտն Robert A. Peter.

«աղօթէ» որ կրնայ կարդացուիլ «աղօկէ»: Եթէ կէնտրը՝ ըստ մեր կարծեաց Ընտրի փոխուած եւ այս վերջին ձեւը պահուած է, պատճառն այն է որ Ընէն, Ընահտր կամ Նոյն իսկ Ընտր աւելի ծանօթ բառ է, քան կէնտրը, ուստի այսպիսի տարակուսական լեզուին մէջ Ընտրի պահուիլն աւելի բնական է: Երկրորդ դժուարութիւնն էր, թէ ի՞նչ ձեւով կը գործածէ Մագիստրոս՝ Նէտ բառը. մեծ եղաւ մեր զարմանքը երբ «ի կէնտէ . . . ճարտէալ» իմաստով գտանք «ճտրէլ . . . . Նէտէ—+» (Մկս. էջ 210) դարձուածքը:

Խնդիր չկայ որ «զէնքերու» նման «կարծրակուան» բառերով խօսող Մագիստրոս՝ Նէտի գաղափարակից բառ մը ստեղծած է՝ զկիրակոս շլմորեցնելու համար: Թէ իրօք իւր Եղէն բառերն իբր Զէնէ կը գործածէ Մագիստրոս՝ փքացեալ բարձրամիտ հակառակորդն յետս մղելու, վանելու, ինքը Մագիստրոս կը վկայէ. «փինատթէքդ փքացեալ՝ ապա զէնէ— (զինուք) բաց ասացեալ» (Մկս. էջ 237)[1]: Բայց ոչ միայն Նետի, այլ Նէ-

[1] Համեմատէ Մագիստրոսի գաղափարակից մէկ ասութիւնը. «Համարեա՛ դու զքեզ քեցեալ, ձաղեալ, ծեծեալ ի բաց վարեալ» (Մկս. էջ 237): Գիտէ Մագիստրոս՝ ըստ տեղւոյն յիշատակել Նէտը. «յաղթեցին Թագաւորացն առանց զինուց եւ Նէտէ» (Անդ. էջ 192). «արբուցանել Զէնտօ ի կապարճաց իւրոց» (Ամբակումայ խօսքը) էջ 177: Բայց Նէտ ու Զէնէ տեղ՝ ունի փոխաբերութեամբ՝ «արդ՝ միլարեայն (= մէկ լար ունեցող, Մելգոնեան օրինակը «միլարեամ») դու պնդեա՛ զլայնալէճ հայրենին, Զէրէ+Ընէ—էտն (= Նետ) դու մխեա՛ (Մկս. էջ 234) եւն:

ղաչաղ ալ կը գործէ Մագիստրոս, պիտի տեսնենք յաջորդ տողերու մէջ։

5. *Կեստայ* = *Կեստայ* գօտի. [*Ափրոդիտեայ գօտի*]: կէստոս է յն. χέστος, մեկնուած արդէն "Հ. Ամս."ի 1894, էջ 84. լտ. cestus, այսինքն Աստղկան այն գօտին ուր կը պահուէին գեղեցկութեան զարդարանքներն՝ իբր քաջութեան զէնքեր։ Ահա թէ ինչ կ'ըսէ մեր հին մատենագրութիւնը "....զայնոսիկ խորհելով՝ առնու զզարդսն ամենայն ի կէստէն Ափրոդիտեայ. եւ կէստոսն առասպելի՝ տապանակ ինչ գոլ, յորում ամենայն առ ի գեղեցկութիւն եւ քաջակերպութիւն եւ ի շնորհս իրք տրամակայեալ լինին (= կը գտնուին)„ Նոնոս (Հրտրկ. գերմ. Մանանդեանց, էջ 59)։ Կէստոս այն գօտին է որ կը պարունակէր ողէրն ու Նէրերը, որովհետեւ Աստղիկ կը ներկայացնէր յանձին՝ ըստ առասպելին, իւր երկնաւոր ամենայաղթ մօրը, զարհուրելի զօրութիւնը (Դիւցաբանութիւն Moritzի՝ Դր. Max Oberbayer էջ 94)։ Բայց նոյն կէստոսը Արտեմիս դիւցուհւոյն քով՝ կը փոխուի պատկանդարանի, ոսկի աղեղով ու նետերով։ Արտեմիսեայ զէնքերէն զատ պիտի տեսնենք իւր բագինն (տես Նամակիս 14րդ հատուածը)։ Միայն հոս տեղն է հարցնել Մագիստրոս Ուսուցչին թէ՝ ինչպէս կեստոսի մէջ χόνδαξ = Նիզակ կամ շամփուր կրնայ գտնուիլ ....

6. *Ի կոնդակէ* = *Նիզակէ* [ուրեմն՝ ի կեստեայ

կոնդակէ = կեստոսի մէջ գտնուած կոնդակէ]։ Դարձեալ յունարէն բառ մը χόνδαξ-χόνδακος [կը գրուի նաեւ χόνταξ] տեսակ մը շատ սրածայր նիզակ, որ կապ ունի նախընթաց թուին մէջ մեկնուած “կեստոս„ բառին հետ։ Արիստոփանէս “Հաւեր„ կատակերգութեան մէջ կը յիշէ զպատկանդարան՝ πήρα, φαρέτρα եւ λοξοθήκη, նոյնպէս կը յիշէ՝ նետը, գեղարդը, նիզակը եւ գայիսոնը, = “որ վահանաւ եւ “գայիսոնաւ„ ընդդէմ յառնէ„ (Մկս. էջ 62)։ Ջնջելու է Մկս.ի “ի կէս դակոնդակէ„ եւ Էմ.ի՝ “ի կէսդակոնդակէ„ անիմաստ ձեւերը։

7. *Վարատեալ = հարեալ:*

8. *Անհպելի = Բարձր, անյաղթ, վեհագոյն:* Կը մեկնուի Մագիստրոսի ուրիշ մէկ խօսքովը. “Այսքար եւ իմաստասիրաց անձինք անհպելիք եւ անմերձենալիք՝ իբրու զանդանտայս յինքն կարծրագոյն քարշող եւ ինքեան ոչ յումեքէ հակամիտեալ„ (Մկս. էջ 204)։

9. *Համաղեռ = Ոսոխ, հակառակորդ:* Զանազան եւ այլաձայն բնագիրներու մէջէն կ՚ընտրենք միայն Էմ.ի հրատարակութեան մէկ տարբերակը. ոմանք ունին համբդեռ (Էմ., Մկս.) ոմանք՝ համդեռ (Անտ., Վիեն. եւ ՆԲ.). իսկ ՍՌ. ունի համբդեռ՝ բայց իւր ոճով պատրաստ իմաստ մըն ալ կցելով, “համբդեռ, դեռ համբակ = վարատեալ անհպելի համբդեռ կարծեցեալ„ (!!)։ Մեր ընտրած

համադէտը կը մեկնէ Ագր. հակառակ: Ուրեմն իմաստն է "անյաղթելի հակառակ(որդ) կարծեցեալդ[1]:

Հակառակորդ բառին տեղ Մագիստրոս երբեմն կը գործածէ Ներհակ բառը. այսպէս. "Այսուքիկ առասացութիւնք առականք (= առակաւոր) հագներգութիւնք սակս իմաստութեան Ներհակաց . . . . (ասացեալք)„ (Մկս. էջ 204)„: Այս իմաստով կը գտնենք եւ առ Ստ. Կալիսթենեայ (տպ. Վենետ. էջ 185) "ի սադրանաց Ներհակին հանեալ եղեւ ի կէս աւուրց:„

Թէ իրապէս թշնամիներ ունէր Մագիստրոս, շատ յայտնի է իւր խօսքերէն. "ընդ մեզ նորագոյնք եւ անտիականքդ (= անչափահաս) գնեն թշնամութեան սկիզբն„ (Մկս. էջ 212). "մինչեւ յե՞րբ զկնի իմ ձգեն զքեզ հակաճառել գրով„ (Անդ.): Եւ այս հակառակորդները կ'անուանէ Մագիստրոս՝ հակառակէց. "այլ ես ոչ ի հակառակէցն ասացից բան եւ ոչ մի„ (Մկս. էջ 53). բայց որպէս զի հակառակ բառին յոգնակի բացառականը չհասկցուի այս բառը, աւելի պարզ օրինակով մը կ'ուզենք լուսաւորել. "քանզի ի վերայ Աքիտոփելի ասացեալ եղեւ ի Նմանէ ի հակառակէցն, Նաեւ ի մատնիչն...

---

1 Թէպէտ Ագր. եւ Երմ. կը յիշեն համ ֆէտ որ կը նշանակէ դէտ, բայց Ագր.ի մէջ համի առջեւ կայ միջնակէտ (.) մը, եւ յետոյ կու գայ ֆէտ կամ դէտ:

եւ ոչ է հասկացողին հաւանիմ ասել եւն եւն„ (Անդ. էջ 54)։

Այս 10րդ հատուածին իմաստն է.

"Հաստատ գիտեմ թէ ողբալի պիտի ըլլաս այս դժուարահասկնալի խօսքերուս մէջ՝ նետէ ու նիզակէ զարնուողի մը պէս. (դուն որ) անյաղթելի հակառակորդ մը կը կարծուէիր (քեզի)„։

## 11.

*Ստորոգեալ քեզ սքողուտիկոսեան*[1]
Անուն (ստորոգելի) քեզ գիտնական

*փաքնակապէս*[2] *ոգեցից*[3], *ոչ իբրու*
կարողապէս ոգւոց (կոչեցից), ոչ իբր

*տարբեղուն*[4], *այլ տրամակոչ*[5],
անտեղի, այլ պատրաստաձայն,

*փատողանալ*[6] *եւ շորթել*[7] *ի ներացիկ*[8]
բարձրանալ եւ խելամուտ լինել ի պէտանի

*մակառութիւնն*`[9] *ներում*[10] *նպաստ*
մեկնութեան` բառ որում նպաստ
[իբր]

*եղելոց առ ի մէնջ*[11], *առոգացիս*[12]:
եղելոց ի մէնջ, զօրացիր։

Մեր տուած թարգմանութեններէն կը տեսնէ ընթերցողը թէ շատ որոշ եւ նշանակալից միտք մ՚ունի՝ Մագիստրոսի ըսածը, եւ սակայն քանի մը բառերու գրութեան նկատմամբ մեծ խառնակութիւն յառաջ եկած է ձեռագրաց մէջ։

1. *Սքողոստիկոսեան* = *գիտնական*: Ծանօթ յն. σχολαστικός բառը, որ կը նշանակէ՝ ի մէջ այլոց, "գիտութեան մը պարապող, գիտնական": Կը գտնենք այս բառը քողաստիկոս ձեւով 7—8րդ դարու գրուածոց մէջ երկու ուղղագրութեամբ. ա. իբր քողաստիկոս, եւ բ. քողաստիկոս: "Այս Ղիգինոս քողաստիկոս էր եւ ճարտար քան զամենայն ուսմնակիցս իւր" (Վարք Հրնց. Ա. Հտ. Վենետ. 1855, էջ 224). — "իբրեւ զայր իմաստուն քողաստիկոս" (Անդ. էջ 226 եւն). — "բազում քողաստիկոսաց պէտք են աստ՝ զի կարասցեն վիճել ընդ քեզ" (Վարք եւ Վկյբ. Սրբոց, Բ. Հտ. Վենետ. 1874, էջ 493), ուր հրատարակիչը շատ ճիշտ կը նկատէ թէ լատ. scolasticus բառն է. "եթէ զընաւին զաշխարհիս քողաստիկոսս ի մի վայր ժողովեսցես" (Անդ. էջ 493)[1]:

---

1 "Սքողաստիկոս ոմն" (Ժ. Դար.) Վ. Հրնց. էջ 260. իսկ նոյն խօսքը ԺԲ—ԺԳ. դարու մէջ կը թարգմանուի. "այր ոմն իմաստասէր եւ բանաւոր եւ վարժեալ յոյժ արտաքին բանից հռետորականաց" (Անդ.) նոյն խօսքը՝ քիչ մը վարը "առենադպիր էր Ցունաց ճարտարախօս" իսկ Բ. Թրգմ.՝ "հռետոր եւ բանաւոր յոյժ էր նա" (Անդ. էջ 262)։

ԱԳր. ունի "սքողոստիկոս = ատենական դպիր (բժիշկ)։

Այսպիսի ծանօթ բառի մը գրչութեան՝ Մագիստրոսի ձեռագրաց մէջ առած ձեւերն յիշատակութեան արժանի են.

| | | |
|---|---|---|
| Վիեն. ձեռագիրն | ունի՝ | զքօ զօսիկոսեան. |
| Անտ. „ | „ | զքօ ղօսիկոսեան. |
| Կոստան. (տարբերակ) | „ | զփողոստիկոսեան. |
| Իմ. տպագ. | „ | զփողոստիկոսեան. |

2. *Փաբնակապէս = Կարողապէս:* Անտ. ՆԲ. Մկս. եւ Իմ. ունին այսպէս. իսկ Վիեն.՝ փափկանապէս. իսկ Իմ. եւ Մկս. տարբերակներն՝ փաբնապէս։ Նշանակութիւնը կը գտնենք միայն ԱԳր.ի մէջ, իբր՝ փաբնակ = հարուստ, կարող։ Իսկ Երմ. ունի փաբնական = բնիկ, հարուստ։ Պահեցինք "կարողապէս„ նշանակութիւնն, աչքի առջեւ ունենալով այն պարագան, որ Մագիստրոս իրաւամբ ինք զինքը բարձր զգալով՝ զինքը թշնամանող Կիրակոսէն, "չարող„ կը տեսնէ ինք զինքը՝ "իշխանաբար„ տալու այս անունը։ Տեղ մը կը յիշէ այս շնորհումը հետեւեալ խօսքերով. "արդ զայսոսիկ արհեստս եւ մակստացականութիւնս մեծարեցեր դու, վեհ էջ զքեզ ասել ու անդէղէ վարկանիմ„ (Մկս., էջ 203)։

3. *Ոգեցից = Կոչեցից [զանուն . . տաց]:* "Ասել„ նշանակութեամբ ոգէլն՝ Մագիստրոսի լեզուին սովորական բառերէն մէկն է.

"ոգէւալ է հագներգութիւն ի հագնելոյ կարկատուն բան„ (Մկս. էջ 33). "զճարտասանացն ոգէմ (= ասեմ) արհեստ„ (Մատեն. խորեն. վենետ. էջ 396). "(ոչ էր պարտ...) զգօրութեան յոյս քաջութեան հէքից եւ կանանց ողբերգական ոգէլ„ (Մկս. էջ 41). "որպէս յայտնէ ոգէւալքս առ ի քէն„ (Պղտ. Տրամ. Մինովս, վենետ. էջ 120). "որպէս ոգէ Հոմերոս = որպէս ասէ Հոմերոս (Մկս. էջ 110)՝ ինքնին կը մեկնէ Մագիստրոս (տես 4 հատուած եւ 14 հատ. թիւ՝ 14)։

4. *Տարբեղուն* = *Անտեղի, օտարոտի:* ԱԳր. կը մեկնէ այս բառը իբր "խորթ„ "օտարասերմ„ (վերջինը՝ բեղուն, բեղմնաւորել բառէն առեալ). Նոյնպէս եւ Երմ.։ Կը պահենք ՀԲռ.ի "օտարոտի„ բառը, զոր ինքնին Մագիստրոս գործածած է "տարբեղուն„ բառին դիմացը (տես 1 հատուած)։ Կը յաւելունք անտեղի նշանակութիւնը, քանի որ Մագիստրոս (Մկս. էջ 207) նոյնիմաստ տեղ մը կ'ըսէ. "զայս քեզ ասել դուրս էպատշաճ եւ ոչ անտեղի„, որմէ դիւրաւ կը հետեւցուի յաջորդ՝

5. *Տրամակոչ* = *Պատշաճագոյն*, դուրս էպատշաճ։ ԱԳր. եւ Երմ. ունին այս "տրամակոչ„ բառին դիմացը՝ խնամիչ նշանակութիւնը, բայց հոս ի՞նչ գործ կրնայ ունենալ "խնամիչը„, չենք գիտեր։ Կրնայ թերեւս օտարոտին հակակշռելու համար հոս ալ՝

Մագիստրոսի (Մկս., էջ 204) գործած "Հարաղատաբարբառը" նկատողութեան առնուիլ։

6. *Փատողանալ* = *բարձրանալ*: Ագր. եւ Երմ. կը մեկնեն այս անծանօթ բառը՝ "բարձրանալ" ըսելով։ Մագիստրոսի գրածներն՝ ինչպէս 7րդ հատուածէն եւ այս 11 հատուածին յաջորդ բառերէն յերեւան պիտի գայ, "իմանալու, իմաստասիրելու" համար, պէտք է մտօք բարձրանալ, վերամբառնալ։ Կերպ կերպ եւ այլ ընդ այլոյ ձեւերու մէջ մտած է այս "փատողանալ" բառը. Պր. Կոստանեանց ունի՝ ֆատ ողանալ, (իսկ տարբերակներէն մին՝ ճիշտ ձեւը՝ փատողանալ. իսկ միւսը՝ փատղղանալ). ՆԲ. Անտ. եւ Վ. Լեն. ունին՝ փատտողանալ. Էմ. ուղիղ տպած է՝ փատողանալ, բայց տարբերակներու մէջ կը նշանակէ՝ փատղղանալ։ Կազմութի՞ւնը։

7. *Տորթել* = *խելամուտ լինել (բանի մը իմաստը) հանել*: Վերը (Հատուած 10, թիւ 3) յիշեցինք "անշուրթելի" բառը, իբր "կարծրագոյն, դժուարահասկանալի". Ուրեմն բային իմաստը՝ զոր կը յիշեն Ագր. եւ Երմ. իբր "հանել, կրնանք մեկնել՝ իբր "լուծել, իմաստը կորզել, խելամուտ ըլլալ"։ Արդէն շուրթելի նիւթական նշանակութիւնը՝ իբր "յափշտակել", զոր կը յիշեն Ագր. եւ Երմ. "ի բաց հանել" ծանօթ է. "(զմարգարիտն) զոր ոչ դուն եւ ոչ ինքնակալն քո շուրթել կարէք" (8րդ դարէն) (Վարք եւ Վկայ. Հտ. Բ. Վենետ. էջ 497). "Եւ նա փաղփաղակի

շրթնէ ի քէն զթագաւորութիւնդ քո եւ տայ այլում„ (Ոսկեփորեան Հայ. Բաբելայ Վարքը ի Վարք եւ Վկայ. Հտ. Ա. Վենետ. էջ 150). “ոչ ոք է ամենեւին որ ի նմանէ շրթնեւ կարիցէ զարարիչս իւր„ (Կոչ. ընծայ, Վիեննա, էջ 197)։ Ինչպէս ըսինք՝ այս վկայութեանց մէջ շրթնելի միայն նիւթական յափշտակութեան վրայ է խօսքը, իսկ Մագիստրոս՝ փոխաբերութեամբ կը գործածէ։ Ջնջելու է Էմին.ի եւ Պր. Կոստանեանցի տարբերակներու՝ շրթէլ ձեւը (Ն ի եւ Է ի շփոթութիւն)։

8—9. *Ի ներացիկ մակառութիւնս* = *ի պիտանի մեկնութիւնս*: ԱԳր.ի եւ Երմ.ի միաբան վկայութեան վրայ յեցեալ՝ ձեռագրաց եւ տպագրութեանց մէջ այլ ընդ այլոյ գրուած՝ այս բառին կու տանք ա՛յս գրութեան ձեւն ու նշանակութիւնը։ Արդ ԱԳր. եւ Երմ. միաբան կը վկայեն “ներացիկ = պիտանի բան„, անշուշտ “խօսքի մեկնութիւն, բացայայտութիւն = մակառութիւն, հասկցնել ուզելով։ Քանի մը օրինակներու մէջ տեսնուած մակացութիւնն՝ որ կը նշանակէ իմաստութիւն, գիտութիւն, պատճառ եղած է մակառութիւն բառն՝ աւելի ծանօթ մակացութիւն բառին հետ փոխանակելու։ Շատ մեծ անմիաբանութիւն կը տիրէ՝ ինչպէս ըսինք, այս ներացիկ բառին նկատմամբ. Պր. Կոստանեանցի տպագրութիւնն ունի՝ ի ներկայէց (իսկ տարբերակն՝ ի ներակէց), ՆԲ. Էմ. (վերջինս տարբերակին մէջ՝ ի ներկայէց) Անտ. եւ

*վ/իեն. օրինակներն ունին է ներքոյէս։ Պէտք չէ զարմանալ այս տարբերութեան վրայ, գրեթէ — անծանօթ հայերէնով գրուած գրութեան մը մէջ՝ երբ անճանաչելի կամ անսովոր բառ մը հանդիպի, գաղափարողներ կամ օրինակելու ատեն անզգուշութեամբ եւ կամ անորոշ իմաստ մը որոշի փոխելու միամիտ (եւ երբեմն միայն՝ չարամիտ) դի-տաւորութեամբ, ակամայ իսկ իրենց գրչին ծայրը կը գծէ՝ ականջին ու մտքին ծանօթ բառ մը. ուստի ներքոյէ անյայտ բառին՝ ներ-քոյէս կամ ներքոյէս-ի փոխուիլը շատ դիւրին եւ — հաւանական է։ —*

*Մագիստրոս ուրիշ տեղեր “պիտանացու„ եւ “օգտիլ„ (= օգտակար) բառերը գոր-ծածած է. “օգտեցէս յայսպիսի իմաստուն առնէ„ (Մկս. էջ 98). “յարհեստ պիտանա-ցոյ տածել„ (Մկս. էջ 235). իսկ ընդհա-կառակն՝ համեմատէ ամբողջ իմաստին համար (այսինքն՝ “խելամուտ լինել ի պիտանի մեկ-նութիւնս„)՝ “յայսպիսի տկարագոյն մտածու-թենէ կամիմ զքեզ ի բաց մղել„ (Մկս. էջ 114)։*

10. *Ներում = ըստ որում*: Այսպէս Ագր եւ Երմ. միաբան։ Յատուկ այս դարերու հայերէնին՝ էջբ նշանակութեամբ. “Հագ-ներգութիւնս այս ոչ ըստ որում հագներ-գութիւն է մասն քերթածոց„ (= Հագներ-գութիւն ըլլալովը, կամ էջբ Հագներգու-թիւն, Մկս. էջ 33). “ըստ որում ոգէ հո-

մերոս" (Անդ. 110)։ Ներ կը գտնենք ըստ նշանակութեամբ՝ ի մէջ այլոց, նաեւ Ագր.ի առաջին էջին՝ "Մեկնութիւն բառից քերականին" ցանկին մէջ, ուր գրուած է՝ "Ներքոյեւ = ըստ արուեստին", "Ներքոյ = ըստկուռ"։

11. *Նպաստ եղելոց առ ի մէնջ* = *Նպաստ եղելոց ի մէնջ.* այսինքն "ի մակառութիւնս՝ ըստ որում Նպաստ եղելոց առ ի մէնջ" = տուեալք քեզ իբր ի Նպաստ ի մէնջ։

Մագիստրոսի զայրացած միտքը կը յաղթուի սրտի բարութենէն եւ բարձրավիզ հակառակորդին ջախջախումը բաւական կը համարի՝ խրթին բառերով տանջելով միայն անոր միտքը. բայց կը քաջալերէ զինքը, որովհետեւ կ'ուզէ որ հակառակորդը ճշմարիտ իմաստասիրութեան հետամուտ ըլլայ. «մանաւանդ իմաստասիրել քեզ ոչ խուսափեմ" (Մկս. էջ 203). "եւ ինձ յոյժ ըղձալի է տարփանս լինել եւ զանձուկ խանդաղատանաց եւ խոհեմական քո խնդրոցդ լնուլ" (Անդ. էջ 202)։ Եւ որովհետեւ Մագիստրոս համոզուած է թէ՝ "եւ այս կատարեալ իմաստասիրացս է հանճար՝ յորդորել է Բարէին կոյս յառաջացուցանել (զայն)" (Մկս. էջ 226), անոր համար իւր կողմանէ կարելի օգնութիւնը կ'ընէ. "եւ արդ ընծայեմ քեզ նպաստ" (Անդ. էջ 202)։ Եւ ինչո՞ւ այս օգնութիւնը, որպէս զի "առաջադէմ" զօրացիս։ Տես յաջորդ 12 թիւը։

12. *Առոգացիս = զօրացիս:* Եւ այս վեր-ջին բառով կ'ամբողջանայ՝ այս հատուածիս ալ պայծառ միտքը. "Քեզի էէր նուաստ առաջարկած պիտանի մեկնութիւններն իմաստասիրելու եւ լուծելու համար՝ զօրանաս":

"Առոյգանալ" կամ "առուգանալ" եթէ ըլլար այս բառը, բնաւ խնդիր չէր վերցներ. սակայն Մագիստրոսի լեզուին մէջ "առոգանալ" ալ երբեմն մի եւ նոյն նշանակութիւնն ունի: Համեմատէ այս նշանակութեան համար. "աստուածեղէն գրոց իմաստութեամբ առոգէալ (= զօրացած) տամ պատասխանի" (Վարք եւ Վկայ. Հտ. Ա. Վենետ. էջ 536) եւ գոյականը՝ "գեղեցկութիւն եւ առոգութեան մանկան" (Սոկր. Պատմ. Մխ. Վ. Տ. Մով. Վղրշպտ. 1897, էջ 181). "բիւրապատիկ շնորհս եւ պտուղ ծննդոց իմոց աճելութեան եւ առոգութեան զայս համարիմք" (Մկս. էջ 23):

Այս 11րդ հատուածին մեկնութեան համար՝ բաց ի կիտադրութենէ՝ 1 կամ 2 բառերու վրայ պատճառաբանեալ փոփոխութիւններ ըրինք: Կը համարձակինք ըսելու. հատուածիս իմաստն յէականս ճիշտ լուծած ըլլալու նկատմամբ՝ զմեզ բնաւ տարակոյս կամ վարանք չի պաշարեր: Բայց բանասէր ընթերցողին մտաց մէջ ալ կասկած չթողլու համար՝ Մագիստրոսի թղթերու համապատասխան այլեւայլ կոչումներով զօրացնել ջանացինք մեր խուզարկութիւնը:

## 12.

*Տալփիմք*[1] *ցանգ* *տածել*[2] *եւ*
Ցանկամք ցանգ պարմանել եւ

*պատափայել*[3] *եւ* *քուծել*[4], *զի*
ժողովել [պատապարել] եւ անօսցանել, զի

*քաղածեալ*[5] *քեկտեացեա՝*[6] *քակտերեալ*[7],
հարեալ (?) ճչրեացեա՝ (? պատկառեալ (?),

*զլեզուն* *զնղակին*[8] *ի* *ստաղին*[9]:
զլեզուն բերանոյն ի ճեմարանի:

Դիտողութիւն: Դեռ այս հատուածին քննութեան միջամուխ չեղած՝ կանխենք ըսելու, թէ որչափ դիւրին կ'երեւայ՝ առաջին ակնարկով ասոր մեկնութիւնն, այնչափ մեծ դժուարութիւններ ունի: Ըստ բաւական աշխատութիւն պատճառեց մեզի: Ինչո՛ւն, դեռ այսօր ալ հասկցած չենք: Այս բառերու լաբիւրինթոսէն ընդհանուր իմաստ մը կրցանք — բանի — կորզել հանել, բայց թէ յայտ յանդիմանութեամբ տեսակ մը ստուգութեան կրցա՛նք հասնիլ, չենք կրնար պնդել: Կրնայինք իբր անըմբռնելի հատուած մը, բոլորովին զանց ընել ասոր մեկնութիւնը, սակայն ի՞նչ շահ, ի՞նչ օգուտ պիտի ունենայինք՝ այս շատ դիւրին միջոցը գործածելով: Մենք տքնեցանք, կը խոստովանինք. բայց այսու ամենայնիւ բոլորովին

զանց ընելն անօգուտ համարեցանք: Թէեւ տարակուսական, սակայն կը դնենք հոս մեր խուզարկութեանց արդիւնքը:

1. *Տարփիմք* = *ցանկամք*: "Տարփիլ = ցանկալ" ԱԳր.: Միջնադարեան մատենագրաց քով այս նշանակութեամբ սովորական բառ մը. ոսկեդարու մէջ չկայ այս բառը: Ջատ է տուփել, տուփէ, որ միշտ "ցանկասիրութիւն" նշանակութեամբ գործածուած է իբր "բնազդ": Այդ բառն ալ, ինչպէս կը յիշէ արդէն ՆԲ., ունի 1 կամ 2 անգամ գործածութիւն ընտիր մատենագրաց քով. իսկ ստորին դարերու մատենագրութեան մէջ շատ յաճախադէպ է. "դիւայորդոր բղջախոհական ախտիւն յեղազեղեալ տուփէր ի նա" (Մ. Կաղանկ. Էմին. 1860, էջ 74 իսկ Շահնազ. հրտրկ. ի Պարիս՝ էջ 196): "Տուփալ" իբր "ցանկանալ" տ. "Հ. Ամս." 1890, էջ 285). "(կերակուր) որոյ ամենեւին փոյթ ամենայն կենդանի ի բնութենէ ունելով տուփումն" (Պղտ. Տրամ. Մինովս. Վենետ., էջ 219): Իսկ տեղ մը միայն կայ իբր պարզ ցանկութիւն (ոչ բնազդական), այսպէս. "ձեռնարկելոյ ամենայն տուփութեամբ" (Պղտ. Տրամ. Եւթիփրոն, Վենետ., էջ 145): Ուրեմն զանազանելու է տուփելը՝ տուփելէ: Տուփելը՝ ինչպէս ըսինք, ոսկեդարու չէ (նոյն իսկ եթէ գտնուի 1 կամ 2 անգամ ի ձեռագիրս): Մագիստրոս տուփանքը իբր "փափաք" կը գործածէ հետեւեալ տեղը.

«իսկ ինձ յոյժ ըղձալի է տուրփանս լինել եւ զանձուկ խանդաղատանաց եւ խոհեմական քո խնդրոյդ լնուլ» (Մկս. էջ 202)։

2. *Տածել* = *դարմանել* (բարոյապէս), *խնամել*. ըստ ԱԳր.ի եւ Երմ. (տ. Վարը 4 թիւ). «ո՞ արդար դատողութեամբ զորբս եւ զայրիս տածէ» (Մկս. էջ 39)։

3. *Պատսփայել* = *ժողովել* [*ամփոփել՝ հոգալ նշանակութեամբ*]. այսպէս ունի ԱԳր. իսկ Երմ. պատղֆայել։ Թերեւս հեռի չըլլայ մեր «պատապարել»էն։ Ձեռագիրները քիչ կը տարբերին։

Կոստ. պատըղֆայել. ՆՔ. եւ Վիեն. Անտ. եւ Էմ. պատղֆայել։

4. *Բուծել* = *բուծանել* (նէ-բնապէս), ըստ ԱԳր.ի եւ Երմ.ի *սնուցանել*: «Սնոյց եւ խրատեաց» (Պղտ. Տրամ. Եւթիփ. էջ 86), առաջինը նիւթապէս, երկրորդը՝ բարոյապէս, զոր ուրիշ տեղ մըն ալ կը գտնենք այսպէս իրարու կից. «ապա եթէ եւ սնուցանել իմն ուղիղ եւ խրատ յետ այսորիկ հանդիպեացի՝ ողջ բնաւ եւ բոլորովին ի մեծէն ճողոպրեալ խօթութենէ լինիցի» (Անդ. էջ 111)։ Արդէն կը ցանկայ Մագիստրոս՝ դիւրագոյն բառերով հրաւիրել ընթերցողն ի սկզբան անդ որ «սնուցուի». «զի նախ մխեցին ի դրունս մեր, մուծանելով ի խրախճանութիւնս սուղ ինչ չերաշերել» (Մկս. էջ 203)։

5—6. *Բաղածեալ բեկտեսցես* (?) = *վնասեալ փշրեսցես կամ կործանեսցես:*

Հոս է աՀա գլխաւոր դժուարութիւնը։ Մագիստրոս ունի տեղ մը "հարեալ ճեղքէն" (Մկս. էջ 19) բայերը քովքովի, որ ըստ նշանակութեան աղերս մ'ունին մեր բայերուն հետ։ Ագր. եւ Երմ. ունին "բաղածութիւն = վնաս, տկարութիւն։ Բայց ճեղքուել բային նկատմամբ կը լռեն թէ Ագր. եւ թէ Երմ.։ "Բեկտել" բառը կայ մատենագրութեան մէջ. "ճեղքուել եւ մանրել զշղթայս" (Ոսկ. Պւղ. Ա. էջ 640). "զգաւազանս անիրաւաց բեկտեսցէ,, (Սիրաք. տպ. Վենետ. փոքրադիր, էջ 123) տ. նոյնպէս ճեղքուել (Ոսկ. Պւղ. Ա. էջ 224, 781). "ճեղքուեցին շուրջ զնովաւ շառաւեղք թերակատարք" (Իմ. Սողոմ. Դ. 5)։ Վեցերորդ-եօթներորդ դարու մէջ ալ կը գտնենք այս բառը. "գտին զայն կործանել եւ ճեղքել = նոյն տեղը քիչ մը վերը՝ "կործանեցաւ եւ ճեղքեցաւ" (Վարք եւ Վկայ. Հտ. Ա. Վենետ. էջ 173 եւն եւն). "Վնասելով կործանել,, այո՛, իմաստ մըն է. բայց նախընթաց "խնամելին ու դարմանելին,, հետ՝ իբր անընդմիջական արդիւնք, ինչպէս կը համեմատի, անկարելի է ըմբռնել։

Մի միակ ելից հնարք մը կը մնայ, կարելի է փոխաբերութեամբ "անջել եւ կործել,, նշանակութիւնը տալ այս բառերուն, այն ատեն քաջայարմար իմաստ մը կարելի է հանել։ Մենք կը նշանակենք կ'անցնինք, չենք համարձակիր վճռել։ Արդեօք յն. συμφέρω բաղ-ածել հետ կա՞յ առնչութիւն

մը, իբր հաւանել, լսել։ ՍՌ. ունի համաձայնել = ի միասին ածեմ, բերեմ. համաձայնութիւն = ի մի բերան. (հմմտել "ի մի ածել" 1 հատուած)։

Բնական է այս ամէն դժուարութիւնները կը նկատենք՝ բնագիրն ըստ կարելւոյն անփոփոխ պահել ուզելով, ապա թէ ոչ՝ եթէ "բաղածեալ" էն յառաջ "մի" բառիկը կարենայինք նշմարել, ամէն դժուարութիւն կը հարթուէր։

7. Բակտերեալ = վարժեալ (?)։ Պիտի համեմատէինք այս անծանօթ բառը յն. βακτρεύω, βακτηρία բառին հետ, բայց յունարէնը կը նշանակէ "յենուլ, կրթնիլ գաւազանի մը վրայ", տես հայերէն բեկղ (բեկուղ?) = βάκτρον, bacculus գաւազան։ ՍՌ. ունի բակտերեալ, զբակտեր այսինքն զմտրուկ ուսուցանեմ, վարժեմ։ Բայց մենք բոլորովին իսկ տարակուսական կը համարինք գոյութիւնը այս բառին, որուն ուղղագրութեանը չենք կրնար հաւատալ. եթէ յեցեալ՝ ձեռագրաց մէջ սովորաբար նշմարուած գրափոխութիւններու՝ "պատկառեալ"ի կարենանք փոխել "բակտերեալը" ազատած կ'ըլլանք այս հատուածին ալ իմաստը։

Ի՞նչ պատճառ կրնանք ունենալ այսպիսի առաջարկութիւն մ'ընելու։ Մագիստրոս առ Կիրակոս գրած 47րդ (Մկս. էջ 110) թղթին մէջ յառաջ կը բերէ իւր պատճառները թէ ինչո՞ւ բազմութեան առջեւ չէ

ուզեր յանդիմանել զինքը. պատկառեր է. "զոր մեր է դարչարանս պատ առեալ բազմութեան ոչ կամեցաք զքեզ իբր անտեղեակ ի ճեմարանիս, զի տրտմեցիս (= ոչ կամեցաք զի տրտմեցիս իբր զոգէտ ոք)", ուր խօսած էր ինքը` Կիրակոս: Այս բառին առջեւի հարցականը տեղէն խախտելու մեծապէս պիտի նպաստէ Մագիստրոսի հետեւեալ վկայութիւնը. "զի այնու դարչարեալ մանկանց ճեմարանին զգաստացեալք զուղղագոյն խոկացին խուզմունս" (Մկս. էջ 233): Եթէ մինչեւ "լաւագոյն ձեռագիրներ գտնուիլը", ներենք մենք մեզի որոշ իմաստ մը յատկացնել այս հատուածին, կ՚առաջարկենք կարդալ այսպէս . . . . "զի պատկառեալ` կարկեցիր եւ կարճեցեր զլեզու (զլխոյ = կամ բերանոյ քոյ) ի բազմութեան միջի. = որպէս զի ամչնալով` բազմութեան մէջ բերնի լեզուդ բռնես":

8. Գնդակին = բերանոյ, գլխոյ: Այս զարմանալի նշանակութեան առջեւ հարցական նշան մը չտեսնելով պէտք չէ զարմանալ ընթերցողը. վասն զի Մագիստրոսի լեզուին մէջ գլուխ կ՚անուանուէր` գունդ կամ գնդակ: Թէպէտ բառագիրքերու մէջ չկայ այս նշանակութիւնը, սակայն — trotzdem! — այս նշանակութիւնը գոյութիւն ունի. "(զաստուածային շրջաբերութիւնն) . . . ի գնդաձեւոյ մարմնոյ զսա կապեցին, զոր այժմ գլուխ անեմք, որ եւ աստուածային իսկ է, եւ

այնոցիկ՝ որ ինչ ի մեզ, ամենեցուն տիրեալ„ (Պղտ. Տրամախ. Եւթիփ. Վենետ. եջ 112)։ — "Տեսին զվէմն (որուն վրայ տղուն գլուխը կտրուած էր) ներկեալ արեամբն նորա, եւ հետ զնղլին ի քարին, որ նշանակեալ ունէր զգիծ չափոյ զնղլին„ (Վարք եւ Վկայ. Հտ. Ա. Վենետ. էջ 21)։ "Երաշխաւոր ընդ իմ ետու զզունդ սրբոցն (= զգլուխ)„ (Անդ, էջ 34)[1]։ Առարկութիւն մը կրնայ յառնել. ֆնդակ, գունդ, այս կրնան գլուխ նշանակել, բայց "լեզու բերանոյ՝„ "շատ ջուր կը վերցնէ„։ Մեր պատասխանը։ Ի հարկէ գունդն = σφαίρα դիւրաւ կրնար Կիրակոսէ իբր գլուխ = κεφαλή հասկցուիլ։ Արդ քանի որ Մագիստրոս զԿիրակոս շլմորեցնելու դիտաւորութիւն ունէր, չէր քաշուեր բերնէ ալ իբր նոյն մարմին՝ գունդ, գլուխ անունը տալու։ Եւ այս այսպէս է յունարէնի մէջ. κεφαλή կը նշանակէ յունարէնի մէջ եւ բերան. օր. ὄσον κεφαλὴ χάδε φωτός = որչափ որ դիւցազին բերանը կրնար տանիլ,

---

1 Անկ. Գիրք Առաքելական. Վենետ. 1904, էջ 98. "Հայեցայ ի գուբն այն եւ էին ի հուրն ֆնդակ ֆնդակք վերայ„. միւս համապատասխան օրինակներու մէջ կ'ըսուի պարզապէս. "բիւրք բիւրուց մարդկան„. միայն էջ 108 յիշատակուած օրինակը բոլորովին տարբեր գրչութիւն ունի, բայց յիշատակուելու արժանի է. "Երաց զգուբն դժոխոցն. եւ էր հուն դժնդակ քան զամենայն մեղաւորացն, եւ երեւեալ հուրն ֆնդակ եւ կային ի ներքս այլ գունդք բազումս (!). եւ որ հուր էր եւ բազումք կային ի ներքս„։

այսինքն՝ որչափ բարձր որ կրնար (գոչել)։ “Κεφαλὴν καὶ γλῶσσαν ἄκραν ῥιπτεῖ θερίσας = զգլուխն եւ զլեզու սուր հնձեալ արկանէ։ Կ'ենթադրենք որ այս կարճ պատասխանով կրցանք ջնջել այս առարկութիւնը։ Բայց նոյն իսկ եթէ այս անվիճելի՝ յունարէն, ցուցումը պակսէր, պէտք չէ աչքէ կորսնցնել, որ այսպիսի առիթներու մէջ Մագիստրոս բառերու շատ խղճամիտ ուշադրութիւն դարձնողներէն չէր, ապա թէ ոչ գլխո-ոսկրապատակին պիտի չըսէր խելապատակ. եւ սակայն ըսած է. “քանզի խելապատակն զերկնի[1] ունի նշանակութիւն„ (Մկս. 111). իսկ ուրիշ տեղեր կը գործածէ բնական նշանակութեամբը. “զի շունչն խելապատակին (ճիշդ մեր՝ խելքի կէտն = պտուտակն ըսելուն պէս) վերտաչեալ դեդեւեսցին այսր անդր ոտնառութեամբ„ (Մկս, էջ 203). “ախորժելի է քեզ հազար (= բլբուլ), սակս գլխոյդ քո ջերմութեանն եւ խելապատակիդ զովութեան„ (Մկս. էջ 96)[2]։

---

[1] Իսկ Դր. Թորգոմեանի “Հ. Ամս.„ի մէջ հրատարակած նոյն նամակին մէջ կը կարդանք. “քանզի խելապատակն ներքէ ունի նշանակութիւն„ (Անդ. 1892, էջ 166)։ Զմագիստրոս բժշկական տեսակէտով դատել ուզողը պէտք է անպատճառ կարդալ Դր. Թորգոմեանի տեսութիւնը։

[2] Թէպէտ երկու նշանակութեամբ ալ ուրիշ մատենագրաց քով եւս կը գտնենք գործածուած. ա = գլխոյ սկաւառակ. “յորժամ ջախջախեցան խելապատակք գլխոյ նորա„ (Վարք եւ Վկայ. Վենետ. Հտ. Ա. էջ 626). “շխելապատակէ անտի . . . ի վայր կոյս կախեալ ձեւանայր պատիճն„ (Մ. կա-

9. *Ի ստադին* = *ի ճեմարանի* [*բազմու-թիւն*]: Յունարէն Στάδιον իբր ասպարէզ (600 յն. կամ 659 հռմ. ոտք.) միշտ ստադ կամ ստադիոն կը թարգմանուի (տ. «Հ. Ամս.» 1894, էջ 85)։ Բազմաթիւ մատենագրական վկայութիւնները զանց կ'ընենք։ Սակայն ծածկամիտ Մագիստրոս որ նեղել կ'ուզէր իւր հակառակորդը՝ ստադ կը գործածէ՝ ճեմարանի, բազմութեան տեղ. «որ ոչ երբեք ի ստադին վազելոյ ճգնամարտկաց եւ քերդողաց հնացեալ...՝ ի մոռացումն այսպիսւոյ մատենին... անկանել» (Մկս. էջ 9). «զոր մեր ի պատկառանաց դնաք ասէաք (= դիզուած) բազմութեանն (Անդ. էջ 111)։» Զին կը կրթէին ստադիոնի մէջ. Կիրակոսի անկիրթ լեզուն կ'ուզէր Մագիստրոս ճեմարանին մէջ կրթուած տեսնել։ Եւ կը փափաքի խնամել ու խրատել, որովհետեւ յառաջուընէ ճեմարանին մէջ կրթուած չէ Կիրակոսի լեզուն. «բայց յայսպիսի տկարագոյն մտածութենէ կամիմ զքեզ ի բաց մղել, զի դայեակէ անկարգութեանն (= Կիրակոսին՝ լեզուով ըսածները) նախատեալ ոչ կրթել տեղ ըստ կարգի ճեմարանին հասանէ (= կանխաւ ճեմարանին մէջ չկրթուելէն յառաջ կու գայ» (Մկս. էջ 114). որուն իբր ամբողջացուցիչ կը ծառայեն Մագիստրոսի հետեւեալ խօսքերը.

---

ղուանկ. Էմին. Մոսկ. էջ 159 իսկ Շահնազ. տպ. Պարիս, էջ 323). Բ = խելք. «ի Խելապատակէն թեթեւ գոլով» (Աստղիկ. Հր. Ս. Մալխաս. Բ. տպ. Պետերբ, էջ 278) եւն եւն։

«Իսկ եթէ կրնեալ էր քո յայսմ ատադէն մրցանակի եւ վերծանեալ զ. . . բանաստեղծութիւնն» (Մկս. էջ 107)։

## 13.

*Ոստանագոյն*[1] *յայսմ* *եւ* *ոսփայ*`[2]
Քաջագոյն յայսմէ եւ հոգւոյ [լաւ եմ]`

*ախորժիմ* *տնտանել*[3] *եւ* *ոսախիմալ*[4]
կամիմ . դայեակել եւ օգնել

*յակքարութեան*`[5] *յարատեւանալ.* *եւ*
յօժարութեանդ` յարատեւել. եւ

*ընծեռել*[6] *նորօրաբար* *նեցուկ* *զկրթմունս.*[7]
տալ նոր նեցուկ շնորհանքս.

*եւ ոչ* *ծասքեմ*[8] *մախելով,*[9] *զի մի՛*
եւ ոչ թշուառացուցանեմ նախանձելով, զի մի՛

*մախիզեալ*[10] *եւ* *ծիւրեալ* *մեղկիցիս:*
անտեղեակ [միացեալ] — ծիւրեալ ծնկիցես։

1. *Ոստանագոյն* = *Քաջագոյն:* Կայ ԱԳր.ի եւ Երմ.ի քով. իսկ ՍՌ. ունի` առաքոյն, զոր իւր ոճով կը գործածէ. «առաքոյն յայսմ եռսա ախորժիմ»։ ՀԲռ. չունի այս բառը բառաշարքին մէջ, բայց ամբողջ խօսքը կը յիշէ տեղանել բառին մէջ. կը յիշատակէ

ռազ = իմաստուն, ներհուն, պրսկ. բառ մը. այս վերջինս կրնանք նկատել արմատ՝ ՍՌ. ռազագոյն բառին։ Գէորգ դպրին պարսկերէն բառագրոց մէջ راز = ռազ բառին երկրորդ նշանակութիւնն է՝ "քաջ, կորովի"։ Այս է ԱԳր.ի եւ Երմ.ի նշանակութեան մեկնութեան հիմը եւ պահելու է այս իմաստը։ Ձեռագիրներէն շատերը ունին ռազնագոյն, այսպէս Մկս. Էմ. (տպ.) ՆԲ. Անտ. միայն Վիեն. ունի "ռաստնագոյն" ՆԲ.ի յիշած մէկ տարբերակը՝ ունի Որատնագոյն, ռաստնագոյն։

2. Ռափայ = հսկայ: Այսպէս ԱԳր. եւ Երմ.։ Եթէ այս երկու բառագիրքերու մէջ պահուած չըլլար այս եբր. ռաֆայ բառը, անհնարին պիտի ըլլար թէ նշանակութիւնն իմանալ, եւ թէ հատուածիս մէջ բռնած դիրքին կարեւորութեանն համար՝ ամբողջ հատուածիս գոնէ առաջին մասը լուսաւորել։ "Այս բանիս [Նամակիս] մէջ քաջագոյն եւ հսկայ (ըլլալովս)" կ'ըսէ Մագիստրոս Կիրակոսին։

ՀԲռ. բառաշարքին մէջ չունի այս բառը, բայց ծանօթ է իրեն եւ — ռաֆայ իմաստով (տ. ռեֆան բառին տուած մեկնութեանը մէջ.) իսկ ռեֆանէլ բառին մէջ ալ կը յիշէ, բայց ռաֆա ձեւով։ Ինչպէս վերը տեսանք՝ իր հակառակորդին համեմատութեամբ՝ ռաֆայ, վէհ, վէհագոյն կը համարի ինք զինքը (եւ կարծենք՝ իրաւամբ) Մագիստրոս։ Առ Կիրակոս

ուղղած նամակի մը մէջ (Մկս. էջ 115)
ըսելէն ետքը թէ՝ Յոյները միայն երաժշտու-
թեան մէջ քաջ են, իսկ բոլոր միւս մնացեալ
գիտութիւններն՝ Եբրայեցիներէն, Քաղդէա-
ցիներէն, Եգիպտացիներէն եւ Եթովպա-
ցիներէն եւն առած են՝ «զայլսն յայլմանէ
թարգմանեալ եւ ժողովեալ», կը յաւելու
այս նշանաւոր խօսքը. «Եւ այս սակաւուք
քեզ նշանակութիւն ի մէնջ, զի ծանիցես,
եթէ ի ձէնջ թարգմանեալ երբեմն, այժմ կա-
րեւորաբար ուսուցանել» (էջ 116) այսինքն. այս
քանի մը խօսքերը՝ համառօտիւ կը նշանակեմ,
որպէս զի գիտնաս, թէ երբեմն ձեզմէ թարգ-
մանութիւններ կ'ընէինք, բայց հիմայ անհրա-
ժեշտաբար սորվեցուցինք քեզի. որուն կ'ըսենք
մենք գրական առակով մը. «Երբեմն ձեր
աշակերտը, բայց հիմայ՝ վարդապետը:»
Տեսնենք հիմայ այս «այժմ» բառին՝ ձեռա-
գրաց եւ տպագրութեան մէջ առած այլ
ընդ այլոյ ծպտանքները. ՍՌ. կը գրէ այժմ.
ԷՄ. (տարբերակ)՝ այժմ. ԷՄ. (տպ.) Անտ.
եւ Կոստան. այժմ. ՆՔ.՝ այմ — փա. Վիեն.՝
այժմ: Ուրեմն ուղիղ՝ «Քաջագոյն եւ այ-
ժմ» ձեւէն՝ վերջին յն պահած են՝ ԷՄ.
(տարբ.) եւ Վիեն. իսկ «այ» ին էր պահած
են ամէնքը: Դիւրաւ կը մեկնուի ԵՌ. ձեւին
մէջ -ի զեղչումը:

3. Տիտանել = դայեակել: Մի եւ նոյն
իմաստով ունի Մագիստրոս «կուրծաղեկել»
(Մկս. էջ 236): Շատ ճիշդ կը մեկնէ ՀՔՌ.,

բայց աւելի դէդան, դէդանէ+ բառին տակ (զոր տես ի յաջորդս [հատ. 15]) «տիտան = դայեակ» գրելով: ՀԲռ.ի այս՝ դէդան բառին իբր դայեակ տուած նշանակութիւնն ի՞նչպէս անծանօթ է մնացեր՝ «Պղատ. Տրամախ. Մինովս» (1890, Վենետ.) գրքին տպագրութիւնն յանձանձող հրատարակչին, որ «անշուշտ վրիպակ!» ընթերցում կը համարի՝ դէդան+ բառը եւ ծանօթութեան մէջ իբր թէ կ'ուղղէ, էջ 225. «զտիտան+ն (պէտք էր զա՛յս ուղղել՝ զտիտանսն) հարկեմք՝ տանջելով օրինօք զմանկունս . . . բերել» եւն: Նոյն դիտողութիւնը կ'ընէ հրատարակիչը (Անդ՝ էջ 352). «մինչդեռ տղայք էին կաթամբ սնեալ՝ լսէին ի դէդանեացն եւ ի մարց» եւ կը դնէ յն. τροφός: Բայց ուշադիր ըլլալու է որ յն. τροφός (τρέφω բառէն) պարզապէս սնուցիչ ըսել չէ, այլ եւ դաստիարակ [պարսկ. دایه դայէ (դայեա) յգ. دایکان դայէկեան] դաստիարակ. τροφός բառին աւելի իգական իմաստ կը տրուի, իսկ իբր արական աւելի կ'ըսուի τροφεύς: Համեմատել իմաստին լուսաւորութեան համար. «եղիցի կերակրիչ եւ դաստիարակ ամենայն աշխարհի» (Վարք. Աղէքս. էջ 161): Պէտք չենք տեսներ յիշեցնելու որ τροφός կը նշանակէ՝ ոչ թէ միայն դաստիարակ, այլ եւ սան. հմմտ. τροφοὶ ἀντὶ τοῦ θρέμματα: Բայց τρέφω նախապէս «սնուցանել» նշանակութենէն զատ ունի՝ կրթել, հրահանգել նշանակութիւնն ալ: Պղատոնէ գործածուած

ունինք «հրահանգել զոք բանիւ եւ կրթութեամբ (հրահանգօք) = τινὰ λόγοις καλοῖς καὶ μαθήμασι τρέφω. Կրթական (սնուցանելու) գաղափարն ի բաց վարելով՝ կրթելի օրինակ ունինք դարձեալ ἐν ἐλευθερίᾳ τε καὶ σχολῇ τεθραμμένος = յազատութեան եւ յուսմունս կիրթ. «ἐν φιλοσοφίᾳ τεθραμμένοι = վարժեալք, հրահանգեալք յիմաստասիրութեանն» եւն եւն: Եւ Մագիստրոս ալ տիտանին դայեակ նշանակութիւնը գիտէ, որովհետեւ կը գործածէ ալ. այսպէս. «կարէ կարկատել կեղծաւորելով բան զորէն կուրի բանդականին տիտանեան դայեկաց» (Մկս. էջ 15): Բայց զարմանալի է. τρέφω կը նշանակէ թէ՛ մարդ կրթել եւ թէ՛ կենդանիներ. եւ կը գտնենք դայեկել հայերէն բառն նոյն երկու առումներով ալ. «իբր հայրաբար զվարկն հատուցանելով դայեկին (գձի)» (Մատեն. Խորեն. Վենետ. էջ 452). «մատուցեալ (արանց) ոմանց առ դայեկել.» (Վարք եւ Վկայ. Վենետ. Հտ. Բ. էջ 169): Ստոյգ է դայեակ իբր կրթիչ աւելի յետին դարերու մէջ յաճախ կը գործածուի. բայց չմոռնանք որ Մագիստրոսի հայկաբանութիւնն ալ այս դարերուն կը պատկանի: Ոսկեդարու հայերէնի մէջ 1 անգամ եւ այն՝ քիչ մը տարակուսական իմաստով կը գտնենք դայեակ բառը իբր կրթիչ. տես Կանոնք Ս. Սահակայ Վենետ. էջ 93. «մի ի տունս իշխանաց դայեկութիւն առնել (= քահանայն)»:

Արդ ԱԳր. եւ Երմ. կը լռեն. իսկ Մագիստրոսի ձեռագիրներն ու տպագիրներն անմիաբան են. ՆԲ. եւ Մկս. ունին՝ դէդանէլ, Կոստ. (տարբերակ) եւ Էմ. (տպ.) ջէդանէլ, Էմ. (տարբ.)՝ դէ դանէլ. Անտ.՝ դէաանէլ. Վենն.՝ դէդանէլ։ Կը պահենք ուրեմն դէդանէլ ձեւն իբր ճշտագոյն։

4. Ռասիմալ = օգնել (?) Այս հատուածին մի միակ տարակուսական բառը. որուն նկատմամբ կը լռեն բոլոր բառագիրքերը։ Միայն ԱԳր. էջ 154 ունի "ռասիմ = գզիր, սուրհանդակ, չքրիկ (իբր սեմ. բառ), իսկ էջ 226 հայերէն բառերու շարքին մէջ նոյնը կը կրկնէ։ Երմ. ունի՝ ռասիմ = սուրհանդակ. եւ ո՛չ այն երկու բառագիրքերն իրարու կը միաբանին։ Գալով Մագիստրոսի բնագրին՝ կատարեալ լաբիւրինթոս մը կը ներկայացնէ. Էմ. տպագր. նոյնպէս Մելգոնի [Միւնխէնի] օրինակը ունին՝ ջադէմ. Մկս. եւ Էմ. (տրբկ.)՝ ջաաէմալ, Կոստ (տրբկ.)՝ դաաէմալ. ՆԲ. Անտ. եւ Վենն.՝ ռաէմալ։

Ի՞նչ կը նշանակէ ԱԳր.ի ջղէրը. գզիրն արաբ. կը նշանակէ մուքթարէ. Իսկ փոքր Ասիոյ տաճկաբարբառ ժողովրդեան մէջ կը յիշուի "Խըդըր էլիաս" "օգնութիւնը, եկաւ, մեծը հասաւ"։ Ասկէ է՝ Ս. Գէորգայ կամ Եղիայի "օգնութեան" տրուած անունը՝ Խըդրըէլլէզ[1]։ Չենք համարձակիր

1 Տես Zenker. Տաճկ. գաղ. գերմ. երկհատոր հոյակապ բառագիրքը։

հարցական նշանը գեղչել. բայց “դայէա-ւէլ„ բառին իմաստին ամբողջութեան համար այս՝ թէպէտ տարակուսական, “օգնել„ը կ'աւելցնենք, մինչեւ որ “տաաւժաւլ„ի իմաստն լիովին պարունակող բառ մը գայ խախտէ զինքը: “Օգնել„ կ'ըսենք, որովհետեւ Մագիստրոս՝ այսպիսի մրցմանց մէջ նեղ մտնողներու համար կ'ըսէ. “զի օգնական լիցի քեզ ի քումդ հանդիսի մրցանաց„ (Մկս. էջ 147): Բանասէրք թերեւս մեզմէ աւելի յաջողութիւն ունենան՝ հարցականներ ջնջելու գործին մէջ[1]:

5. *Յակքարութեան = յօժարութեան:* Այսպէս միաբան ունին ԱԳր. եւ Երմ.: ԱԳր. նոյն տեղը ունի եւ բայը՝ “յա՛քարել = յօժարել„: Ուրեմն “յօժարութեանդ օգնելու յարատեւել„: Մկս. ունի՝ յատատրոաբէան (իսկ տարբերակ՝ յատաչրոաբէանա). ՆԲ. եւ Անտ.՝ յատատրոաբէան. Վիեն.՝ յատրոաբէան. Էմ.՝ զյաքաքլութիւնս (իսկ տարբերակ՝ յատատրոաբէան:)

6. *Ընձեռել = շնորհել՝* ըստ ԱԳր.ի: Սովորական “տալ„ նշանակութեան մէկ նրբութիւնը:

7. *Զկրթմունս = զհրահանգս:* Աւելորդ է այս յայտնի բառին շատ մը վկայութիւններ խճողել: Այս նշանակութեամբ գործածած է՝ ի մէջ այլոց, հետեւեալ տեղերը Մագիս-

---

1 Բնաւ առնչութիւն չունի հոս՝ Նոնոս էջ 12 յիշած “Թրասկէմալ = կրօնք„ բառը:

տրոս. «այնու ոչ այլ ինչ նշանակէ, եթէ ոչ փարթամն եւ զ՚ի բարիսն կերմաւնն» (Մկս. էջ 93). «յատտիկեցի կերմաւնն» (Անդ. էջ 235): Էմ. ունի տարբերակ մը չկոբմաւնն:

8. *Ծաւքեմ* = *ծակել, մանրել, թշուառացուցանել*: Համեմատէ՛ վերը՝ «աճիւնիցն ծաւքման» (Հատուած 9րդ) «գետին կործանիլ, կործչիլ»: ԱԳր. եւ Էրմ. «ծակել = մանրել»: Մագիստրոս «ի կոր կործանել» նշանակութեամբ կը գործածէ ծաւքել բառը. «զթշուառացեալ ծերացեալ ծաւքեալ մայր նորա» (Մկս. էջ 144): Շատ հետաքրքրական են՝ այս ծանօթ բառին ձեռագրաց մէջ առած ձեւերը. Մկս. ունի՝ ծաւքեմ. Էմ.՝ ծաւքեմ (իսկ տարբերակ՝ ծմաւքեմ). ՆԲ. եւ Անտ.՝ մծաւքեմ. իսկ Վիեն.՝ մթաւքեմ:

9. *Մախել* = *նախանձիլ* [*մախանալ*]: Սովորաբար կը գրուի մախալ, ծանօթ՝ մախանք բառէն. «չարի առն յատուկ է մախալ ընդ վեհագոյնն» (Ս. Աթնս. Ճառք, Վենետ. 1899, էջ 150) «մախալ առ ի չարէն ընդ մեր պատիւն» (Ն. Շնորհ. Զ. բանք. Վենետ. 1830, էջ 318) «մախանօք յարուցանելով ասէին» (Ս. Աթն. էջ 178) «մախանք (= մախանօք) հասուցանին մեզ ամենեցուն այսպիսեացս» (Պղտ. Տրամախ. Եւթիփ. էջ 13). «բազմաբեղուն հնարիւք մախացեալ ընդ մերոյս կրօնից» (Մկս. էջ 92):

Ոսկեդարու հայերէնին անծանօթ բառ մը, որ թէ իւր գործածութեամբն եւ թէ իւր

բարդութիւններովն իսկոյն ի ցոյց կը դնէ գրչութեան միջնադարեան հայերէն ըլլալը։ Զարմանալի է. բոլոր ձեռագիր ու տպագիրներն համաձայն են այս բառին գրչութեան մէջ... Լաւ կը ճանչնան իրենց ապրանքը։

10. Մախիզեալ = անտեղեակ լեալ [անգիտացեալ]: Նր.՝ թմ-խէղ (անգոյ) բառին մէջ մեկնած է այս բառը, որ կայ արդէն Ագր.ի մէջ, իսկ Երմ. ունի "մախազ = անյայտ„ (Հմմտէ եւ Հտ. 15, Թիւ 6)։

Զնջելու է Մկս.ի մէջէն մախ եղէալ ձեւը, նոյնպէս Ըմ.ի՝ մախեղէալ գրութիւնը. ուղիղ ձեւն ունին Նր. Անտ. եւ Վիեն.՝ մախեղէալ։ — —

Ահաւասիկ ուրեմն այս հատուածին ընդհանուր իմաստը։

"Քեզմէ աւելի քաջ եւ հսկայ ըլլալովս կ'ուզեմ սորվեցնել եւ քու յօժարութեանդ օգնելու յարատեւել եւ ձրի կրթել զքեզ [հրահանգներով]: Նախանձելով [կամ ոխակալութեամբ] չեմ ընկճեր, որպէս զի (գրածներուս) անտեղեակ մնալով թշուառ ու եղկելի չըլլաս։„ — Այս հատուածիս մէջ 7 անճանաչելի բառեր կային. 6ը ճանչցանք եւ ծանօթացուցինք, կը մնայ անստոյգ թոռխմուլը, որուն՝ ենթադրական կամ հաւանական իմաստ մը որոշեցինք՝ ամբողջ հատուածին մեկնութիւնը չվտանգելու համար։ Մխ. Հեր. էջ 45, 50 եւն "[illegible]„ի հետ աղերս ունի՞։

## 14.

Ողիմպիական մրցանակ[1] ուղղակիտեմք[2]
Ողէամպէական մրցանակ ուհմանեմք

զի ուռճացիս, ելոյդ ի նիշդ
ղէ ղուրճացիս, գոելոյդ է նշաաակ
(տեղ որեւտ)

ոգորական տոգորից[3]:
ոգորական մրցմանց։

Տենչամ՝ քեզ՝ տրամակայեալ[4] փարթալ[5]
Տենչամ քեղ խելամատ լինել գանեայ

զտարրումն[6]:
յէական մանանս։

Ճաղապատեալ շաղաշար[ի] գրիւք
Հէաէաւ ղաագաւար [արյակ] գրակէ

տրամաբանեցես[7] (զ)տաւրոս-ակիւթացի[8]
էմաատաէրէացէա ղաաարաաակէ-թացէ

զկացրղականն[9] տիւռռենական[10] օ-
կացրդական [արյ ոնական] հարատահարէլ օ-

տարավրէպ[11] կ որքանիցն Արտեմական[12]
տարաադան ղուհէցն Արտեմեայ

քազնին զիսկութենէ[13]: Ոգեա՛[14] մեզ
մեղքին զերծութենէ: Առա՛ մեզ

սեւեռագոյն[15]՝ — զի ծանեայց՝ եթէ
պնդագոյն՝ — զի ճանաչեցի՝ եթէ

սուղ փաղփեալ[16]՝ փանաքիմացդ,[17]
[illegible] փայլեալ, [illegible],

փառաւարթեա՞լ[18] զոս, — զփառոտ[19]
պերճացեա՞լ էջէր, — [illegible]

քո միպաաանութեան:
քո(յոյ) [illegible]:

Դիտողութիւն: Համեմատութեամբ 10րդ, 12րդ եւ 13րդ հատուածներու՝ այս 14րդ հատուածը շատ մեծ դժուարութիւններու կապուած չէ: Եթէ նախընթաց հատուածներու մէջ իբր առաջարկու, իբր յաղթապանծ հսկայ մը երեւեցաւ Մագիստրոս, այս հատուածիս մէջ կը ներկայանայ իբր պսակ խոստացող մը: Միշտ ինք զինքն անհամեմատ բարձր ցոյց տալով՝ կ՚առաջարկէ Կիրակոսին դիւցաբանական առեղծուած մը, զոր չենք գիտեր թէ կրցա՞ծ է լուծել Կիրակոս: Պատմութիւնն այս կէտիս մէջ կը լռէ: Բայց դարեր ետքը մենք կը ձեռնարկենք՝ ի սէր եւ ի յարգանս Մագիստրոսի խնդրարկութեան՝ լուծել իր հանելուկները, ի ջատագովութիւն խեղճ Կիրակոսի, որ շատոնց զղջացած պիտի

ըլլայ՝ այնպիսի ահարկու վիճաբանող մը՝ զՄա-
գիստրոս, իրեն դէմ գրգռած ըլլալուն։ Մինչեւ
հիմայ մեր տեսած հատուածներուն մէջ այս
14ն ամենահետաքրքրականն է, թէ իմաստին եւ
թէ հանելուկին համար։

1. *Ողիմպիական մրցանակ* = նոյնը։ Ծա-
նօթ են հին յունաց “ողիմպիական մրցարան„-
ներու մէջ (Վարք եւ վկայ. Վենետ. Հտ.
Բ. էջ 420) նահատակներու տրուած պար-
գեւները, զորոնք “ողիմպիական մրցանակ„
կ'անուանէ Մագիստրոս։ Պղատոն երկայն կը
խօսի այս նահատակութեանց հաստատութեան
վրայ՝ “գնել նահատակութեանց եւ յաղթու-
թեանց պարգեւ„ (Պղ. Տրմխ. Մինովս,
Վենետ. էջ 283). բայց մրցողին իբր մրցող
պարգեւ չէր տրուեր = “քանզի նահատակի
զպարգեւս նահատակութեան ոչ տացուք„
(Անդ.), այլ պէտք էր յաղթել = “եւ այնմ
որ յաղթէ զյաղթանակին պարգեւեսցուք
իւրաքանչիւրոց„ (Անդ.)։ Սակայն պէտք չէ
միայն նիւթապէս մրցողներն արժանի համա-
րիլ “ողիմպիական մրցանակին„ (Նոնոս,
էջ 80). ուրիշ երկու տեսակ մրցողներ ալ
կը զանազանուին. Նախ. “արիացելոցն յաս-
պարէզս եւ հանճարեղաբանիցն (1. օր. հան-
ճարաբանիցն) յատեանս՝ ոստ ձիթենւոյ տային,
իբր նշան յաղթութեան եւ որպէս յԱթենայ
պատուեցելոց„։ Ահա Մագիստրոսին սահմա-
նած մրցանակը։ Կիրակոս ցոյց պիտի տար
իւր հանճարեղաբան ըլլալը, որպէս զի արժանի

ըլլար “ձիթենւոյ ոստին„. իսկ Երէցուէր տեսակ մրցողներն էին. “զժուժկալսն ի մրցմունս ասպարիսացն՝ շուշի ոստօք պսակէին, իբր թէ եւ նոքա ժուժկալութեամբն եւ տեւականութեամբ սաղարթացեալք լինէին„ (Նոնոս, էջ 81)։

Ողիմպիական (ինչպէս ունի Մագիստրոս) բառին յունարէն ձեւն է ὀλυμπιακός = Ὄλυμπος [իսկ վերջնոյս յոնիական ձեւն է՝ Οὔλυμπος]։ Արդ այս բառը բազմազան ձեւեր առած է մեր մէջը. բուն ուղիղ ձեւն է՝ ողիմպիական։ Մագիստրոսի բնագիրներէն եւ ոչ մին ունի ճշտագոյն ձեւը. Մկս. եւ Անտ. ունին՝ ողիմպիական, Վ. իեն. Էմ. (եւ իւր տարբերակը)՝ ողոմպիական. ՆԲ.՝ ոլոմպիական[1]։

---

1 Հետաքրքրութեան համար յառաջ բերենք մեր տեսած հայերէն գրքերէն այն ամէն ձեւերն, որոնց մէջ մտած է այս բառը. “ոլոմպիոսեան, յՈլոմպիոսէ„ (Մկս. 49). “ոլոմպիական մարտիկ կռիւ„ (Ոսկ. Անդր. ճառք, Վենետ. էջ 419). “ողոմպիական եւ ողումպիական„ (Նոնոս, էջ 80). “Ոլիմպիաթացն (= ὀλυμπιάδος) (Կոչ. ընծ. Վիեն. էջ 218). “ողոմպիադ թարգմանի ըմբշամարտ„ (Եւս. Քրոն. Ա. Վենետ. էջ 2). “յողոմպիոջս„ (Անդ. էջ 291). “Ուղմպիանդք„ (Ագաթանգ. Վենետ. 1835, էջ 331). “զողոմպեան պսակն ի գլուխն ունելով„ (Վարք Աղեքս. Վենետ. էջ 27). “Ովղիմպեան (1 օր. ուղումպիեան) = Թէրսիդէս ովղիմպեան կոչի„ (Նոնոս, էջ 72). “(արգեստէս) զոր եւ ողիմբիաս կոչեմք (= ;ողմ)„ (Գ. Անյղթ. Վենետ. էջ 612). “որպէս զոլիւմպ ազգն Յունաց հզօր երեւեալ„ (Մ. Կաղ. Էմին, էջ 197. իսկ տպ. Շահնազ. Պարիս, էջ 381. նոյն խօսքը՝ յուղումպ). “յոլոմպիադսն պատուէր„ (Մկս. էջ 219). “ստս ղոմպիական„ (Անդ. էջ 32)։ Գեղեցիկ միօրինակութիւն գրչութեան . . . ։ Թէպէտ լեզուագիտին համար այս ամէն ձեւերն ալ մեկնելի են, բայց խորհրդածել կու տան, թէ այս յայտնի ու պարզ բառը, եթէ

2. *Ողղակկիտեմք* = *սահմանեմք*, *տամք* [*ընծեռեմք*]: Բոլոր ձեռագրաց ու տպագրութեանց միաձեւ ուղղագրութեան զօրութեամբը՝ ջնջելու է իսպառ Լմ.ի մէկ տարբերակը՝ ողղակկիտեմք հրեշային ձեւը:

3. *Ելոյդ ի նիշդ ոգորական տոգորից* (?) = "*քեզ՝ որ եւդ ի նշաւակ ոգորական մրցմանց*,,: Ստիպուած ենք՝ տարաբախտաբար, 1 բառի պատճառաւ հարցական մը աւելցնել այս բառաշարքին, որ շատ կնճռեալ ու խառնակ ձեւ առած է Մագիստրոսի բնագիրներուն մէջ: Մկս. ունի՝ որչափ կ'երեւայ ճշտագոյնը, "Ելոյդ է նէշդ ոհորական դոգորէց„ (իսկ տարբերակ մը՝ "Ելոյ դինել դոհորական„). ՆԲ.՝ "Ելոյդ է նելդոհորական դոգորէց,,. Անտ. եւ Վիեն. "Ելոյդ է նէլդ ոհորական դոգորէց,,. Լմ.՝ "Ելոյ դինել դոհորական դոգորէց,, (իսկ տարբերակ մը՝ դոհոորական):

Այս բառաշարքին իւրաքանչիւր բառերը մանր քննութեան ենթարկելով՝ հաւանական իմաստ մը հանելու համար, հարկ է Մկս.ի "է նէշդ,, բառը պահել. եւ զարմանալի է՝ միայն այս տպագրին մէջ կայ "ի նիշդ,,:

ա. "Ելոյդ„ է առաջին օղակն այս խառնադէզ բառակոյտին: Մեր սովորական եւ բային աներեւոյթ ձեւն է, որ այս հայ-յունական շրջանի հայ թարգմանութեանց մէջ՝ (իւր

---

այսչափ յեղաշրջմանց կ'ենթարկուի, ինչ ըսելու է մէկ անգամ գործածուած անծանօթ, օտար բառերու գրչութեան

ընկեր՝ ջուրի հետ) շատ յաճախադէպ է. “զնոյն եւ հրեշտակ էլ (= լինել)՝ մեծագոյն քան զհրեշտակս„ (Ս. Աթան. ճառք, Վենետ. էջ 104). “եւ կարօտիմք քեզ մերձ էլոյ մեզ օգնականութեան„ (Մկս. էջ 66). “ահա հաւանիմ քեզ էլոյ յ....հատեալ„ (Անդ. էջ 69). “իսկապէս իրածէ էլ„ (Մկս. էջ 110. տ. 1 հատ). “երկպատիկ ի քէն հայցէ բանս իրաւացի ինձ վարկանիլ, մանուկ դու, նախ էլոյ եւ ապա բարւոք էլոյ (= նախ լինել եւ ապա բարւոք լինել)„ (Մկս. էջ 235). “(վարդապետք) բարի էլոյ պատճառք են եւ առաւել պատիւ ընդունելոյ քան զհայր+ ըստ մարմնոյ. քանզի նոքա (նոքա = հարք) միայն էլոյ պատճառք, իսկ վարդապետք՝ բարւոք էլոյ„ (Մկս. էջ 209) եւն եւն։

Բայց մեր փնտուած բայաձեւն այս աներեւոյթը չէ, այլ ընդունելութիւն անցեալը։ Կայ բարեբախտաբար այս մեր խնդրածն ալ՝ էուլ = սեռ. տր. էլոյ եւն. եւ շատ յաճախ. էուլ իբր լէուլ յն. ὤν, ὄντος։ Դաւիթ Անյաղթի անուամբ մեզի հասած գործերն, ի մասնաւորի ներածութիւն, Վերլուծութիւնք, Արիստ.ի ստորոգ. եւ ասոնց մեկնութիւնը, բայց ի մասնաւորի Պերիարմենիայի լեզուն, Մեկնութիւնն ի Վերլուծականն մինչեւ էջ 557 (տ. Դ. Անյ. տպ. Վենետ. 1833) կատարեալ յունարէն են[1]։ Արդ թէ ասոնց մէջ եւ թէ

---

1 Կը զարմանանք թէ ինչպէս երբեմն իբր Ե. դարու լեզու նկատուած են ասոնք։ Մագիստրոսէն չեն յառաջ

Պղատոնի երկու գրքերու թարգմանութեան մէջ եւն եւն, ԵՈՒԼ, ԵՂԱՅ, ԵՂՈՒԼ կը վխտան։ Այս "զգուշալի հելլենաբանութիւնք" ինչպէս կը մկրտէ Հ. Բռ. գոնէ մէկ օգտակարութիւն ունեցած են այս առթիւ. կ'օգնեն՝ Մագիստրոսի այս առեղծուածային ու խրթնացեալ հատածը լուսաւորելու, եւ հրատարակիչներու "ՏԷՆԷԼ" եւն եւն կարկատանքը ի բաց նետելու։

ԵՂԱՅՏ ուրեմն ճիշդ կը թարգմանուի՝ "ԵՂԱՂԷՏ" = ՏԵՂ ՈՐ ԵԱՏ։

Ե. Ի ՆԻՇՏ = ի նշաւակ, այսինքն "ի նշան", առարկայ, նպատակ եւն (տ. այս վկայութիւնն "Հանդ. Ամս." 1893, էջ 187. ՆԻՇ = ասոր. niša, հմմտ. Arm. Gramm. Hübschmann. Սեմ. բառեր. Հտ. Բ. էջ 204)։

Զ. ՈՃՈՐԱԿԱՆ = ոգորական, մրցական. "ՈՃՈՐԱՄ" (Զգօն. տպ. Կ. Պ. էջ 60) եւ "ՈՃՈՐԷՄ" բայէն. ՄՐՑԻԼ, ՃԳՆԻԼ նշանակութենէն զատ՝ Խրիմ. ունի առանձինն գլխով "ՈՃՈՐԷԼ" =

---

ըլլալուն հաւատալը մեր գործը չէ... Միայն մինչեւ "Ցաղագս քերականի պատճառ", "Թուղթ առ Աղէքս." (Անդ. էջ 603). "Արիստոտէլի յաղագս առաքինութեանց", ըստ բաւականի մաքուր եւ — գեղեցիկ լեզու ունին (մինչեւ էջ 635)։ Այս վերջինները կրնանք միւսներէն զատել ու — հեռացնել՝ "Անյաղթեանց" լեզուին մէկ նմոյշն ալ համարելու է Նեմեսիոսը (Վենետ. 1889)՝ իր ԲՆՈՒԹԵԱՆ նմանութիւններով, որուն թարգմանիչն է՝ կ'ըսուի, Ստեփ. Սիւնեցի։ "Դաւիթ Անյաղթի" անուամբ գրքերուն ո՞վ է....։

«Հովանաւորէ, ընդդէմ կռուոյ»: Նոյն իսկ ոսկեդարու հայերէնի մէջ կայ «ոգորել»ի մեր ուզած նշանակութիւնը. «մենամարտիկ ոգորել ու վիշապին» (Ոսկ. Մտթ. վենետ. էջ 466). «ընդդէմ դարձեալ ոգորէցէք ընդ չարչարանացն» (Անդ. էջ 502). «բանութեանն հողմոց ընդդէմ ոգորէցէ» (Անդ. էջ 601): Բայց կան երկու շատ նկատելի կէտեր. ա. այս «ոգորական» շատ բնական բառին ուրիշ տեղ գործածուած չըլլալը (եթէ վրիպած չէ մեր ուշադրութենէն),[1] քանի որ ոչ հին եւ ոչ նոր բառարաններ չեն յիշատակեր այս բառը. եւ բ. այսպիսի բնական ձեւով մը թողլով՝ ընդօրինակողներ գրած են ոհորական, ահորական, դոհորական, դոհոորական ձեւերը (տ. քիչ մը վարը):

դ. Ցոփորէց = մրցմանց, հանդիսից: Բացառաբար՝ միայն այս բառը անվթար պահած են բոլոր բնագիրներն ալ: Մագիստրոս 2—3 անգամ կը գործածէ ցոփոր, որուն Ագր. եւ Երմ. Ներքինոյ նշանակութիւնը կու տան: Ի հարկէ տեղ մը գործածուած պիտի ըլլայ այս նշանակութեամբ ալ, ապա թէ ոչ այն բառագրողները չէին յիշատակեր. բայց ո՞ւր, անծանօթ է առ այժմ: Մագիստրոս կը գործածէ իբր «տիպք, ապացոյց, փորձ, հանդէս» բայց նաեւ իբր գանձ[2]. այսպէս «յորում [=

---

[1] Ի բաց առեալ Շիրէկո՝ «առեղծուր ախտակամա եւ ի նոցունց այլք յոգորական եղեալք», (Մկս. էջ 79):

[2] Տես Ն.Բ. ի ցոփորել բառին նշանակութիւնը Հտ. 2, Թի. 3:

յԱնանիա] մթերեալ են տօֆօրէ աստուածային եւ ենթակացեալ ամենայն արհեստք մակացութեան" (Մկս. էջ 8). "ի վաւաշ վայրագնացեալ վրդովմանցն վազեալ ի բաց մղեսցի իբրու ի կայծականց հրդեհ եռացեալ, կամ ի տօֆօրս տղմից տաղտկացեալ՝ ի գբէ արտաքս ոստուցեալ" (Մկս. էջ 62), հոս փոխաբերութեամբ կրնանք առնուլ՝ "տղմի տօֆնողներէն, շաղախումներէն": Ուրեմն տօֆնող, մրցում, հանդէս շատ լաւ կրնան մեկնել տօֆօրէ բառը. "որպէս զքառիցն ի նա տօֆօրս (= տիպք) երեւակայութեամբ ցուցից զթուականութիւնն" (Մկս. էջ 72)։

Եթէ յաջողեցանք այս բառաշղթային իւրաքանչիւր օղակը լուծել՝ — եւ բնական է պէտք չենք մեղադրուիլ, երբ ընդհանուրն իմաստին ճիշտ թափանցած կարծենք մենք զմեզ, — այն ատեն այս առեղծուածային բառերը կը նշանակեն, "(մրցանակ կը սահմանենք քեզի) որ նշաւակ եղած ես մրցական տագնապներու մէջ", այսինքն՝ "ըսածներուս իմաստը լուծելու համար սաստիկ կը նեղուիս": Ճիշտ այս իմաստը կը մեկնէ Մագիստրոս այլուր քիչ մը տարբեր բառերով. "եւ հեղջամղջուկ եղեալ ի խնդիր ելեալ տրամախոհական մտածութեամբ Բեւոչոխեօ" (Մկս. էջ 223). "յոգնամրցէն մարդուցմամբ" կ'ըսէ, էջ 230։ "Ոգորական տոգորք"ը կ'անուանէ աւելի պարզօրէն՝ "հանդէս եւ մրցանաց մարտ", (Անդ. էջ 107),

"զի օգնական լիցի քեզ ի քումդ հանդիսի մրցանաց,, (Անդ. էջ 147). եւ որպէս զի "ի հանդիսի մրցման,, էջ 217 յաղթէ, "մրցեալ, կ՚ըսէ, ի հանդիսի ստադին,, (Մկս. էջ 234):

Այս կտորին յարմարագոյն մեկնաբանութիւնն եթէ նկատողութեան չառնունք, այսինքն՝ եթէ "մրցանակ որոշած չըլլար,, Մագիստրոս Նէղէալէն, այն ատեն կարելի էր բոլորովին ջնջել վերոյիշեալներու իմաստն եւ կազմել այսպիսի՛ նախադասութիւն մը. "Ելոյդ ի Նիշ տռօրական տօգորից,, = որ ես ի ցոյցս շօշօկող հանդիսից,,. այսինքն. "քեզ որ նազանքով (= սիգութեամբ) կը քալես ի հանդէսս (= ի բազմութեան),,. որովհետեւ ունինք տռօրակիմ կամ տռօրակեմ բայ մը, որ կը նշանակէ, նազել, շօշօկել, "պարծ ջնջել,,. այսպէս. "իսկ զօտիցն տռօրակելոց ո՞վ իցէ որ զչափ առնուլ կարիցէ,, (Ոսկ. Պօղ. Հտ. Ա. էջ 69): Կը յիշատակենք այս բառն ալ, որովհետեւ ասով կերպով մը կը մեկնուին ձեռագրաց ոմանց մէջ տեսնուած տռօրական (դոհուրական) կամ տռօրական ձեւերը: Թերեւս այս վերջին մեկնութեան համար կարեւորութիւն ունենայ Մագիստրոսի մէկ բառախաղն ալ. "պղտօրեալ խարդաւանող խորհրդովք խոկալով խազմ յարուցեալ խիզախողաց ոմանց փքացելոց փարթամաց եւ գոռոզից,, (Մկս. էջ 52): Բառերու ուսումնասիրութեան մէջ միակողմանի շարժելու կասկածը չթողլու

համար յիշատակեցինք այս մեր՝ մեզի համար ոչ բոլորովին ստոյգ տեսութիւնն ալ:

4. Տրամակայեալ = խելամուտ լեալ, բառացի՝ ի վերայ կալ [ըմբռնել]: Տրամակայել (ոսկեդարու անծանօթ) բային հայերէնի մէջ գործածութիւնը շատ պէսպէս է. սովորաբար կը նշանակէ ա. բաղկանալ, կազմիլ. բ. լինել, գտանիլ, բովանդակիլ. գ. տրամադիր լինել. դ. հեռի լինել. բացակայիլ: Ահա՛ քանի մը օրինակներ. "շինեաց շիրիմ ինքեան յոյժ անառ ի հողի ուրեք եւ ի ծովացեալ լճամիջի տրամակայեալ (= զետեղեալ, որ գտանի եւն),, (Նոննոս, էջ 24). "յորում ամենայն առ ի գեղեցկութիւն... իւր տրամակայեալ լինին (= գտանին),, (Նոննոս, էջ 59). "առաքեմ տառ [= նամակ] տրամակայեալ յինքեան յոգնաբեղուն քարոզական կնիք յազնուականէն Արաբացւոց,, (Մկս. էջ 103): "թէ որպէս... առ իս տրամակայեալ են (= տրամադիր են), ոչ յոյժ ցանկամ զփորձ առնուլ,, (Պղտ. Տրմխս. Եւթիփրոն, Վենետիկ. էջ 13), "բարեկամութեամբ տրամակայեալ էին (= տրամադիր) առ միմեանս վասն անապատին,, (Պղտ. Տրամխս. Մինովս, Վենետ. էջ 80). "ոչ ապաքէն յայնցանէ որ այսպէս տրամակայեալ էին՝ եղեն մեզ ամենայն այսոքիկ (այսինքն՝ յայնցանէ որ հեռի էին ժամանակաւ),, (Պղտ. Տրմխս. Մինովս, Վենետիկ, էջ 79). "ընկրկեալ թօթափեալ թրմեալ

(Վիեն.՝ Թմրեալ, Տաղչփ. Վենետ.՝ Թմբեալ, էջ 96) ի յայտ (Տղչփ. Վենետ.՝ յայտ) տրամախոյեալ" (Մկս. էջ 237). "զտրամախոյութեան (= բացակայութիւն) առոգանութեան (= զօրութեան) մարմնոցն" (Անդ. էջ 143) եւն եւն: Բայց տրամախոյել կը նշանակէ եւս խելամուտ լինել, ի վերայ հասանել. համեմատէ. "տրամախոյել մտացութեամբ" (Մկս. էջ 213). "բայց խոկացիս տրամախոյեալ մակամտածութեամբ" (Անդ, էջ 233). "զի պատճառ գոլ գծի ոչ տրամախոյի (= չի հասկցուիր) ստորանգեալ ընդ թուով" (Մկս. էջ 119). "առեալ զգիր ձեր, վերծանեայ: Եւ... տրամախոյեալ (= ի վերայ հասեալ) թեւակոխեցի մերով մակստացական եւ ներածական վարժմամբ" (Անդ. էջ 133): Բայց ի վեր քան զամենայն հետեւեալ վկայութիւնը կը հաստատէ պայծառօրէն այս նշանակութիւնը. "...հաւատք մեր աներեւութիցն հաւատան. զիմանալիս՝ մեր մարդ՝ որ ներքինն էր, տրամախոյեալ (= խելամուտ լեալ) յեղափոխեցաւ [ի] վերին. վասն որոյ զիմանալիսն իմանամք, եւ զանհասութիւն նորա հաւատովք ճանաչեմք" (Մկս. էջ 174): Աւելի ապացոյց պէտք չէ, կարծենք:

5. *Փարթար* = *զոնեայ, զոնէ:*
6. *Տարրումն* = *յէական մասունս, ի տարերն.* յն. *γραμμάτων στοιχεῖα*, elementa literarum. Տարրումն՝ ծանօթութեան մը, գիտութեան մը տարրներու ըմբռնումը: Նոյն իմաստն

աւելի բացայայտ կ'երեւայ Մագիստրոսի հետեւեալ խօսքէն. "(Թուականութիւն) յորմէ բոլորն ուսումնական արհեստ յառաջխաղացեալ տարրականաց„ (Մկս էջ 226):

7. Ճաղապատեալ շաղաշար[ի] գրիւք տրամաքանեցես = հիւսեալ զուգաշար [արձակ] գրովք իմաստասիրեցես. այսինքն՝ "հետեւեալներու իմաստը միաշար հիւսուած խօսքերով գրես, ըսածս արձակի վերածես„: Աւելի մեկնութեան չի կարօտիր նախադասութիւնս: Թէեւ „շաղաշար" բառին պաշտօնն իմաստէն իսկ յայտնի է, բայց ԱԳր. կու տայ յայտնապէս այս նշանակութիւնը. "շաղաշար = զուգաշար„:

8. Տաւրոս-սկիւթացի: Փոխանակ ձեռագրին տերեկավեացի կամ տերեեկավեացի (Հմմ. ունի "տիրէ կովկացի„) բառին՝ պէտք է կարդալ տաւրո-(կամ տօրո) սկիւթացի: Պատճառը պիտի տանք՝ Մագիստրոսի առաջարկած՝ այս հատուածին իմաստը մեկնելու ատեն, ի թիւ 13:

9. Կացրղական = տօնական [հանդիսական]՝ կացուրդք բառէն: Վրիպակ չէ "կացարդականն„ ալ, որովհետեւ Մագիստրոս կը գործածէ զայս ալ. "զղամպարափայլ կացուրդական տօնախմբութիւնս„ (Մկս. էջ 156). բայց ճշտագոյնը՝ կացուրդական է:

10. Տիւռռենական = հարատամարական, տիւռռենեան. յն. τυῤῥηνικός (եւ ոչ՝ τυῤῥε-

νικός)։ Մագիստրոս (Մկս. էջ 204) ունի՝ «տիւռենացիք» «որ ի տիւռենացւոցն դուժիցն աւարիւր» (Անդ. էջ 25). բայց ունի նաեւ նոյնպէս էջ 134՝ «տիւռենական»։ Նբ. «տիւառենական» (պէտի ըլլայ՝ տիւռենական). Ն.Մ.ի մէջ կը պակսի բոլորովին այս բառը. «ընդդէմ տիւռենացւոց մարտուցեալ յաղթութեամբ» (Անդ. էջ 49) «տիռենացի կաղնի» (Անդ.), «եւ նման յամենայն փառաւորն լեռնայնոցն» (Անդ. էջ 124). (տ. ի թիւ 13, վարը)։

11. *Օտարավրէպ կորբանիցն* = *օտարասպան զոհից*։ Մագիստրոս էջ 124 գործածած է օտարասպան բառը. «մի՛ ըստ սովորութեան օտարասպանէն այն խողխողեսցի» (տ. ի թիւ 13, վարը)։

12. *Արտեմական բագնին* = *Արտեմեայ մեհենին (տաճարին)*։ «Արտեմական» ձեւին փոխարէն ունինք Հայերէն բազմաթիւ ուրիշ ձեւեր, այսպէս. «Արտեմիդեայ տաճարին» (Պղտ. Տիմէս. Մինովս. էջ 283). «Արտեմիդեան տաճար» (Վարք եւ վկայ. վենետ. Հտ. Բ. էջ 50). «խորտակեաց զբագինն Արտեմիդեայ» (Վարք եւ վկայ. վենետ. Հտ. Ա. էջ 144). «զի կայր թերեւս տաճարն Արտեմիդեայ» (Անդ. էջ 144)։ Բայց նոյն իսկ Արտեմիդիցուհւոյն անունն արդէն բազմաձեւ կերպարանաց մէջ մտած է. «Երդնում ի ճառագայթաբերն Արտեմիս» (Վարք եւ վկայ. վենետ. Հտ. Ա. 660). «Արտեմեայ պատկեր»

(զոր կը փշրէ Ներգինեայ կոյս) (Անդ. էջ 388). “զԱրտեմիս ասեն որսոյ եւ աղեղաւորութեան վերատեսուչ գոլ„ (Նոնոս, էջ 17). “Երկրպագել Արտեմի տիրուհւոյն դիւացն„ (Վարք եւ Վկայ. Վենետ. Հտ. Բ. էջ 211). “Մեծի աստուածոյն Արտեմոնի„ (Անդ. էջ 207). “Արտեմէ բագինն զարկաւ զգետնի„ (Անդ. էջ 394). “աղքատ ոմն . . . ունէր ի ձեռին խուրում զոսկիակուռ գլուխ մեծի . . . Արտեմիդեայ„ (= զոր փշրած էր Թէոդորոս ստրատելատ) (Անդ. Հտ. Ա. էջ 575)։ Կը յիշուի այս անուամբ կամուրջ մըն ալ. “իբրեւ եկին ի կամուրջն որ կոչի Արտեմի„ (= որուն վրայ կտրեցին Ս. Նրինիոսի գլուխը)„ (Անդ. էջ 359). եւ ուղտ մը՝ “հեծեալ յԱրտեմիանն ուղտն„ (Մկս. էջ 87) (տ. ի թիւ 13)։

13. *Ձիսկութենէ = զէութենէ:*

Հոս ստիպուած ենք ընդարձակ փակագիծ մը բանալ, որպէս զի 8—13 եղած թուերը կարենանք մեկնել եւ գոհացնել Մագիստրոսի՝ Կիրակոսէն խնդրածը։

Այս թուերու ընդհանուր իմաստն է. “Արտեմիսի տաճարին մէջ՝ օտարասպան զոհերու պատմութեան արձանականը իմաստասիրէ [գրէ]„։ Այս քաջածանօթ իրողութիւնը կը գտնենք 5րդ դարու մէջ եղած հայերէն թարգմանութեան մը մէջ՝ Նոնոսի քով, որուն հրատարակութեան վրայ խօսեցանք վերը։ Մագիստրոս մեծապէս օգտուած է այս գրքէն (տ. “Հանդ. Ամս.„ 1904,

էջ 139—146, եւ 165—173, Հ. Ն. Ա-կինեանի՝ շօշափելի ապացոյցներով յիրեւան հանած այս գիւտը)։ Արդ Նոնոս իւր գրքին մէջ քանի մը տեղ կը յիշատակէ այս զրոյցը՝ — "Վէպասանութիւն, ըստ Մագիստրոսի։

"Յաղագս Տաւրացւոց պատմութեան։ Տաւրոս ազգէ սկիւթական, յորում էր տաճար Արտեմիդեայ, յորում տաճարի քահանայուհի էր Իփիգենիա դուստր Ագամեմնոնի թագաւորի։ Յայսմ տաճարի զամենայն մարդ եկեալ յօտարաց զոհէին Արտեմիդեայ։ Յաղագս այսր պատմութեան յարձանականն հաւաստեաւ աստացուք„ (Նոնոս, էջ 8)։ Իսկ արձանականներու մէջ, էջ 28, նոյնն աւելի մանրամասն կը նկարագրէ. այսպէս։

Յաղագս Տաւրացւոց պատմութեան։ Տաւրացիք ազգ են սկիւթացւոց (տես ուրեմն մեր թիւ 8 "Տերէկիսկիւթացէ„ բառը՝ "Տաւրոս-սկիւթացէ„ ձեւին փոխելուն պատճառը)[1], առ որ փոխադրեցաւ ի ձեռն Արտեմիդեայ Իփիգենիա (= Ιφιγένεια) դուստր Ագամեմնոնի. յորում հանդերձեալ էին զոհել զնա յաղագս եղջենացւոցն յԱւլիդեայ. յաղագս որոյ եղն (= եղնիկ) փոխանակ տուեալ աստուածուհւոյն՝ ետ զոհել։ Արդ այս Իփիգենիա ի Տաւրոս գոլով, զի մի ծանիցի է Հելլենացն եկելոց, թէ ո՛ ոք իցէ՝ հրամայէր զոհել զնոսա Արտեմիդեայ, եւ նա

[1] "Որ եւ ոչ այսպիսի Պելոպոննեսացէ քաղաք եւ ոչ խառնք սկիւթացէ„ (Մեկն. էջ 102 եւ էջ 55).

էր տաւրոպողոնն„ եւն եւն։ Իսկ էջ 17—18 նոյնը տարբեր բառերով կը կրկնէ. "Յորժամ Ահըլլադայ(!) նաւարկութիւնն եղլինացւոց եղեւ ի վերայ Տրովադայ առ ի Յովղիդէ Բիովտացւոց, ուր լինելով Արտեմիդեայ, եւ դստերն Ագամեմնոնի. որում անուն էր Իփ-գենեա (ուղիղ՝ Իփիգենիա) ի զոհ մատուցանելով, Արտեմիս ողորմեալ կուսին՝ յափշտակէ զնա տանի առ Տաւրոս ի Սկի-Թիա, եւ Իբեւեցոյց փոխանակ կուսին եղն, զոր առեալ եղլենացիքն՝ զոհեցին։ Իսկ Իփ-գենիա ի Սկի-Թիա քահանայուհի եղեւ Արտեմիդեա(յ).։ Կ'ամբողջանայ զրոյցը էջ 30. "Յաղագս արիւնոուշտ լինելոյն առ բագնօքն Արտեմիդիայ։ Այս գոլով եւ ողջախոհ աստուածուհի՝ ուրախանայր արեամբ Հի-բոպողոն-Թեան եւ պատուեալ լինէր։„

Մագիստրոս ալ ուրիշ տեղ (Մկս. էջ 124) նոյնը կամ նմանը կը պատմէ. "(Պարմենիդեայ որդին . . . ծովէն ազատելով) նաւորդք . . . զհրաշատեսիլն ընկալեալ մատուցանեն զնա Թոանդեանին (= տաւրականին) Արտեմիդեայ, եւ ողոքեալ խնդրէին մեալ մանկանն կենդանի, զի մի՛ ըստ սովորութեան տաւրոպողոնին այն խողխողեսցի[1],,։

Կարծենք կարեւորէն աւելի ապացոյցներով

[1] Պղատոն կը յիշէ թէ "Արտեմիդեայ տաճարին„ քով ինչեր պէտք էր ընել նաւաստակը՝ մրցանակով պսակուելու համար (Պղատ. Տրամախ. Մինովս Վենետ. էջ 283)։

կրցանք հաստատել թէ 8—13 թուերը բնաւ տարակուսի տակ չեն իյնար այլ եւս։

14. *Ողեա՛ = ասա՛, պատմեա՛.* տես Հատուած 11. Թիւ 3։

15. *Սեւեռագոյն = պնդագոյնս, հաստատագոյնս* (տ. եւ ՆԲ. Հատ. 1. Թիւ 6)։ "Մնացուս զմեզ առնել սեւեռագոյն տիրապէս խոստմանն" (Մկս. էջ 127). Պղատ. Տրամ. Եւթիփ. էջ 112՝ "պարտ է առնել սեւեռագոյն", ասացուածն ալ կրնայ աւելի լոյս տալ։

16. *Սուղ փաղփեալ = սուղ ինչ փայլեալ*։ ԱԳր. եւ Երմ. այս նշանակութիւնը կու տան փողփողել բային. իսկ փողփողելի կ՚ըսէ ԱԳր. "պատրեալ", սակայն անըմբռնելի է մեզի հոս՝ "պատրեալ"ը։ Փողփել իբր փայլել շատ սովորական բառ մըն է. "փողփէին յարկ ձեղուանցն իբրեւ յաստեղց ճառագայթից" (Վարք Աղեք. [Կալիսթ]. Վենետ. էջ 160) "որոց խոյակք հնդիկ փայտ սեւաթոյր փողփէին" (= իբր փայլուն) եւն (Անդ. էջ 155)։ "Խոպոպք վարսից փողփողեալք ի վերայ ճակատան զօրէն վարդի վառ ի վառ գունով" (Ար. Լաստ. Վենետ. էջ 64). իսկ Մագիստրոս ունի էջ 120 "անփառունակ փողփողուն". Նոյնպէս ունի փողփողական ձեւ մը (Մկս. էջ 238) իբրեւ հողողկել (տ. 5 Հտ. Թիւ 2)։

Որչափ յաճախ կը գործածուի այս փողփել = փողփէ՛ բառը յետագարեան մատենագրաց քով (համեմատէ Թ. Արծր.

Միջագիւղ, 1852, էջ 144. Ստ. Օրբել. տպ. Շահնազ. Բ. Հատոր, էջ 244. Խորեն. Մատ. Վենետ. էջ 435, 453), նոյնչափ զարմանալի է որ մէկ անգամ իսկ չի գտնուիր ոսկեդարու մատենագրաց քով:

Իսկ «սուղ = սուղ ինչ, սակաւիկ մի», տես «տուր ինձ առ այս սուղ ինչ իմաստասիրել» (Մկս. էջ 204):

17. *Փանաքիմաց* = *պակասամիտ, տկարամիտ*: Ոմանք կը բաժնեն «ֆանաք էմայ», բայց հարկ է միացնել, քանի որ Մագիստրոսի քով սովորական բառ մըն է այս. «ընդ աղօտ պշնելով, ֆանաքէմայ խուզմամբ հասեալ հաղիւ հաղ» (Մկս. էջ 78). «ըստ մերումս ֆանաքէմայ մտածութեանց» (Անդ. էջ 85):

18. *Փարաւարթեալ* = *փերեւետեալ, յղփացեալ. Վրէն. փարաւարտեալ եմ*: Ոսկեդարեան բառ մը, որուն սովորական ձեւն է ֆէրէ-էրթէմ. «այլ իբրեւ յիւրեանց երկրի ֆէրէ-էրթէցէն համարձակ» (Ոսկ. Ես. Վենետ. էջ 92). «աւելի զգեստիւք զինուքն պճնիցէ եւ փերեւետիցէ» (Կան. Ս. Սհկ. Վենետ. էջ 119): Կը գտնուի իբրեւ ֆէրէ-էրթէմ ալ (տես Ոսկ. Ես. էջ 110). նոյնպէս «ի փղոսկրեայ գահոյս ֆէրէ-էրթել» (Ոսկ. Պւղ. Ա. Հտ. էջ 62). բայց նաեւ ֆարաւամբէմ ձեւով. «պարաւանդեալ ֆարաւամբէլ» (Ոսկ. Մտթ. Ա. էջ 279). «բազում հանդերձիւք պատատեալ ֆարաւամբէյէն» (Ոսկ. Պւղ. Ա. էջ 338):

19. *Փասա* = *զպատճառ(աբանութիւն)*: Ոսկեդարու հայերէնին անծանօթ բառ մը, որ "Անյաղթեանց,, դարուն ծնունդ է առած ապահովապէս յն. φάσις (= արմ. φημι) + ատ (= ոյ-ատ մասնիկով) (Գեր. Հ. Ա. Այտընեան): Ըստ մեզ շատ կասկածելի է այս ստուգաբանութիւնը: Աւելորդ կը համարինք էջերով այս բառի գործածութիւնը ցոյց տալ. Մագիստրոս ալ շատ չի սիրեր այս բառը. ունի միայն "բուխճանակ եղանիմ ֆասաղէք (= պատճառաբանիր)„ (Մկս. էջ 238) եւ "ֆասալեան„ (Անդ. էջ 106): Ուրեմն 13—17 թուերու մէջ մեր տուած մեկնութիւնն ամփոփելով կ'ունենանք հետեւեալ իմաստը:

"Ասա մեզ պնդագոյնս զպատճառաբանութիւն վիպասանութեան քո, զի ծանեայց եթէ պակասամիտ սուղ ինչ փայլեալ յղփացեալ իցես:„

## 15.

*Սխրալի*[1] *սաղմերովդ*[2] *վերլուծական՝*
Զարմանալի ճանէք [թողէք] ընծայական [մեկնական]՝

*ուղփանեմ*[3] *շաւղօք* *զգուշացուցից*
ընթանալ շաղօք պատուհանէցէս [ցանցէս]

*քեզ* *չու*[4] *ի* *քարգոնոսականն* *պատ.*[5]
քեղ ճանապարհ յարքանէ պալատն,

զի մի՛ մախիզ[6] մնասցէ մթերեալ

մեհենչանք[7]՝ ծանծեալ[8] աստուստ[9]

յՌեստուփանէ՝[10] ներառոգեալ[11] «շա-

փրակազգեաց[12] քառացի»,[13] ի համքա-

կաց՝ «փալաքեան»,[14] այս՝ խակագոյն

անխոհիցն[15] անտոհիցն[16] տրամանական[17]

տաղապացութիւն՝ տղմատիպ անկար-

ժիցն[18] վարկեալ՝ տղայական տատա-

նումն[19] տիտանեաց մանկապանիցն,[20]

տխրական տառի ոլակք[21] տալա-

*ժամիցն,*[22] *եւ մրցումն ստորասութեան*[23]
փայելոց, եւ մրցուամ մէկնութեան

*հոլովիցն, անտինել*[24] *անվարժիցն եւ*
բողմաց, շարհուարամ անվարժից եւ

*տաղտկանալ տգիտացն եւ դանդա-*
տաղտաւէ տգիտաց եւ դան-

*ղականն ծուլաց:*
դաղէտ ծուլից:

**Դիտողութիւն:** Այս վերջին հատուածը թէ ամենէն երկարն է եւ թէ ամենախառնակը:

Այս լաբիւրինթոսական բառերու հաւաքոյթին տրուած լուծումն իբր ամենահաւանական՝ մանաւանդ թէ իբր փորձ նկատուելու է: Ուշադիր կ'ըսենք բանասէրները, որ այս խառնակ բառերը գրեթէ անփոփոխ պահած ենք, ի բաց առեալ երկու հատը. միայն թէ աւելի դիւրըմբռնելի ընծայելու համար՝ կիտադրութեան ձեռօք իւրաքանչիւր պարբերութիւնն իրարմէ զատեցինք, եւ յ մը միայն աւելցուցինք մեր կողմանէ:

1. *Սխրալի = զարմանալի, սքանչելի:* Մագիստրոսի այս սիրելի բառը կը գտնենք շատ տեղ. "տայր մեզ աչալուրջ իմն եւ սխրալի օգնականութիւն" (Մկս. էջ 122). "աչալուրջ եւ զուարթական սխրալի ստորակայիւ" (Անդ. էջ 72). "վասն զի ասացից

ինձ «խրախէ» քեզ» (Անդ. 205). այս վերջին ասութիւնը գրեթէ նոյնութեամբ կը կրկնուի Թ. Արծր. էջ 322՝ «այս ինձ խրախէ առ ի պատմել». «պարտ է սուղ ինչ իմաստասիրել.... փոքր ինչ քեզ յայսմ տառի, զի թերեւս խրախացեալ զուարճասցիս» (Մկս. էջ 148): Ի՞նչ պիտի հետեւցնենք այս վկայութիւններէն. «խրախն» է տեսակ մը «զուարթարար» «սփոփիչ», «մխիթարական»՝ միտքը շորթանձ տանջելէն ետքը... մեծապէս կապ ունի հետեւեալ բառին հետ՝

2. *Սալթերովդ*: Երկու մեկնութիւն ունի. բայց ստիպուած ենք երկրորդն ընդունելու.

*Առաջին*: Չորս տարբեր ձեւերու տակ կը ներկայանայ այս բառը Երմ. բառագրոց մէջ. ա. Սաղերովդն = այդ փողոց. ԱԳր. ունի՝ «սադերովթ» = փողոց. բ. սադերովդն = տուն Աստուծոյ (նոյնպէս եւ ԱԳր.). գ. սաղարովդն = զատուցեալ (ԱԳր. սադարովթա). դ. սադերովդն = ձոր: Միայն ա. այսինքն սադերովդն = փողոց կրնայ նկատողութեան առնուիլ, բայց, ինչպէս ըսինք, երկրորդ մեկնութիւնը կը ստիպուինք ընդունիլ:

*Երկրորդ*: Սաղերովդ = այդ տողերով: Առաջին տեսութեամբ թերեւս շատ յանդուգն երեւայ մեկնութիւնը. բայց զօրաւոր պատճառներ առ այս կը ստիպեն. ա. Նկատելով որ նախընթաց «խրախէ» բառը՝ գրուածքի, պատմուածքի մը կցած է Մագիստրոս, հոս

"գրուածք կամ տողան„ ընելու տեղ՝ սըր-ճըգըն բառը գործածեր է. Բ. եր մանիկը՝ "սաթ-էր, այս դարուն մէջ ծանօթ է, եւ նոյն եւս Մօֆէօսըրօ իւր Տաղաչափութեան մէջ (վենետ. էջ 68) կը գործածէ՝ "ոմանց զաչեր փորէին„. Գ. "Սէյրանէ օրնէրօլը ճէր-ըլը-ճըլըն„ այսինքն "մեկնողական զարմանալի տողերով„ բացատրութեան փոխարէն կը գտնենք Մագիստրոսէն գործածուած՝ այսպիսի նախադասութիւն մը. (խրթին գրածներս) "այժմ պարտ վարկանիմ ճէրըլը-ճըլըն բօյօտըրը-ըէամը՝ զքո խոհեմութիւնն երեւակայացուցանել„ (Մխս. էջ 125): Եթէ մեր այս 3 պատճառները զօրեն, այն ատեն օրնէրօլը կ'ըլլայ արաբերէն՝ سطر, յոգ. سطور = sutur (կամ اسطر = estur اساطير = esatir), գրուած, տող, ligne d'écriture, կամ պարզ écriture: Կ'երեւայ թէ այս բառին նշանակութեան վերահասու եղած չեն բոլոր ընդօրինակողները. ոմանք իբր ճանապարհ առած են եւ այսպիսիներ բնագրին մէջ "ուղփաճեմ„ բառէն ետքը "շաւղօք„ բառը զանց ըրած են (ինչպէս Պր. Կոստանեանցի հրատարակած բնագիրը). իսկ ոմք իբր "տողեր, տողանի, ստիւքս = օրնէր նկատած են եւ "ուղփաճեմ„ բառէն ետքը կը գործածեն "շաւղօք„ բառը (տես Նբ. Անտ. Էմ. եւ Վիեն.):

Ըստ մեր առաջին մեկնութեան այս տողին իմաստը կ'ըլլայ՝ բնականաբար. "Ճէրըլը-ճըլըն

լուսաւոր հեռանալէ ծածքայ ցոյց դէտէ տամ„:
Զնջելու է ոմանց՝ "վերլուծական„ ձեւը:

Իսկ երկրորդ՝ եւ մեր ստուգագոյն նկատած մեկնութեան համեմատ, իմաստը կ'ըլլայ՝ "Այդ ոտանչելէ վերլուծական դաշտում՝ լուսաւորուող ծածքայ մը ցոյց դէտէ տամ„. համեմատէ "լուսաւորուող քննադէտ„ (Մկս. էջ 82):

3. *Ուղփաճեմ* = *լուսաւոր* [*լուսաշաւիղ*] (Համմտէ Հատ. 5 "ուղփափաճեմաւ„): Ագր. այս բառին դիմացը ունի արդէն "լուսաճեմ„ մեկնութիւնը: Պր. Նորայրի հետ մենք ալ ստիպուած ենք . . . Ողլումպոսէն հրաժարիլ եւ "ուղփ„-ին "լուսոյ„ գաղափարը պահել (= ոլփի??): Գործածուած է թէ ուղփաճեմ եւ թէ ուղփիաճեմ, բայց ուղղագրական վրիպակ համարելու ենք՝ Նբ.ի "ուղփաճէմ„ ձեւը: Արդ՝ ի մէջ այլոց տես ուղփաճեմ ի Մ. Կաղ. Էմին. էջ 166. "ուղփաճեմ հոգեճաշակ համբուրիւ առլցեալ„ (կամ Շահնազ. տպ. Պարիս, էջ 323). իսկ ուղփիաճեմ կայ հետեւեալ խօսքին մէջ. "քանզի աղբիւր ուղփիաճեմ իջիւք էր այրն երջանիկ„ (Անդ. էջ 170, իսկ Շահնազ. հոս ալ "ուղփաճեմ„ ունի էջ 340): Ուղփ արմատը կը գտնենք նաեւ՝ "օթարան ուղփեան լուսոյն„ խօսքին մէջ (Ս. Աթն. ճառք, Վենետ., էջ 297): Ուլփի բառին քով դրուած երկու հարցականներն ստուգաբանական համեմատութեան համար դրուած են, եւ ոչ նշանակութեան պատճառաւ. վասն զի ուղփին եւ ուլփւոյն

նոյնիմաստ ըլլալը Մագիստրոս արդէն կը լուսաբանէ՝ «լուսանցք եւ մաքուր եւ ոլ-ծիածայլ ողջուրանեան» (Մկս. էջ 150) բացատրութեամբ: Համեմատել նոյնպէս «ջլաւորաջուէղ» թողեալ ճանապարհ» (Մկս. էջ 160):

4. *Ջու = ճանապարհ (ուղեւորութիւն):* Բառին նշանակութեան համար չէ որ զատ գլխով կը խօսինք ջու-ի վրայ, այլ Ն. Թ.-ի եւ Անտ. բնագիրներուն մէջ տեսնուած «ջուէ» ձեւին համար, որ մեծապէս կապ ունի «շաւ-ղջք» բառին հետ: Զարմանալի գործածու-թիւններ ունի այս ջու բառը (որ արմատ է՝ ջուեմ = ջոգամ (կտր. ջոգայ)). «ընդ ա-մենայն ջու ճանապարհին այսպէս առնէր» (Ա. Մակաբ. Ի. 53). — շատ մօտ մեր «շաւղջք ճանապարհ» ձեւին: «Ջուօք յաշ-խարհէ յաշխարհ շրջիմ» (Բարս. Վ., էջ 163) եւն: Իսկ Մագիստրոս ունի իր յա-տուկ ոճերը. «այժմ ուշ եդեալ խաղաղ ջու-մօտ (Մկս. տպ. դափ) առ Բաբելոն» (էջ 86): «եւ էջեալ սորա ջու» (Անդ.). «տայր մեզ օգնականութիւն եւ ընդարձակագոյն դրունս ջու պարէլ (ջուպարէլ) ընթացից» (Անդ. էջ 122): Աւելի զարմանալի՝ «ջու յաղէ անցեալ ջնացին (Սեբէոս Կ. Պ. 1851, էջ 63 եւ 157). «եւ վաղվաղակի ջու յաղէ անցեալ ... ջփաւ» (Յովհ. Կաթ. Էջմ., 1853, էջ 173). «ի ջու անցեալ ճանապարհ արարին ի Ն. քաղաք» (Վարք եւ Վկայ. Վեն. Հտ. Ա. էջ 353):

5. *Ի քարգոնոսականն պատ = յարքունի ապարանս [ճեմարան]:* Ներուի մեզ հոս, մեր մեծ զարմանքը յայտնելու թէ ինչպէս մինչեւ հիմայ ոչ ոք՝ ոչ հին եւ ոչ նոր բառագիրքերն, ոչ ձեռագիր գրողներն ու քննողները, կրցեր են անդրադառնալ այս "Նպատ" բառին վրայ, որ կը կազմէ այս հատուածիս ամենամեծ դժուարութիւններէն մին, եւ սակայն բացի այս տեղէս այլուր գոյութիւն չունի: Ազդուած անտարակոյս "Նպատ լեռ"էն, կամ "Նպատակ" բառէն, անփոփոխ պահուած է մինչեւ հիմայ այս անիմաստ բառը: Եւ սակայն շատ որոշ է "ի քարգոնոսականն պատ" իմաստը: Ուրեմն նախընթաց քաջահնչական (euphonique) ն անցած է հետեւորդ բառին վրայ եւ կազմած է Նպատ — — լեռը: Հայերէն ձեռագիրները կ'եռան այսպիսի փոխանցութիւններով. բայց Մագիստրոսի ձեռագիրներն ալ շատ օրինակներ կը հայթայթեն. այսպէս Միւնխէն. օրինակը ունի. Պատմինիդեայ նշան (էջ 88). իսկ Մկս. էջ 214. ունի ուղէղը՝ "Պատմինիդեայն շան" — "ուղեւորութեան նեղեւ", (Միւնխ. էջ 239), իսկ "Մկս. էջ 76. ուղէղ՝ ուղեւորութեանն եղեւ"[1]: —

---

1 Համեմատելու է վերը յիշուած գրէէջ էո (9 համ.) որ գրուած է՝ "գրէ էջէո". "արքայէջ էո" (այսպէս Մկս. էջ 202), որ ըստ Միւնխ. օրինակին եւ — իմաստին՝ պէտք ըլլայ "արքայ էջէո" եւն:

Քարգոնոսական կազմուած է "տարգոնա = թագաւոր„ բառէն, զոր կը յիշատակէ ԱԳր. իսկ Նորմ. կը գրէ տարգօնա = թագաւոր: Չենք գիտեր թէ ինչ աղերս ունի Գէորգ Դպրի պարսկերէն բառագրոց՝ کیا رک = տէարք կէյա՝ թագաւոր բառին հետ (զոր կը յիշատակէ ՀԲռ.Ն ալ, քա́րիկեյա ձեւով):

Իսկ դառ կը նշանակէ "չէնք, դուռն, ապարանք„: Թող վկայէ ինքը՝ Մագիստրոս, թէ միա́յն եւ միայն այս տեսութիւնն ուղիղ է եւ ստոյգ, ահա́ թէ ինչ կ'ըսէ. "խուզել զխոհեմական արհեստս ի դուռն քարգոնոսական ապարանին„ (Մկս. էջ 9). "առ դրան ապարանէն դրանէ„, կրնայ բառական յն. թարգմանուիլ. „ἐπὶ ταῖς βασιλέως θύραις„ (Մկս: էջ 220), դարձեալ. "եւ կամիմ զի եւ դա յարքունիս քոյոյ (տպ. քուոյ) քարգոնոսական ապարանի առկայացեալ արասցէ քեզ ծէմարան (զի մի . . . դպրութիւնս . . . ի բազմաց սատարեալ ի մոռացումն անկցի„) (Անդ. էջ 97): Ունի Մագիստրոս տարգոնական ձեւ մըն ալ, որ յամենայն դէպս նոյն է "քարգոնոսական„՝ պարսկատիպ յունաձեւ բառին հետ. "եւ մաշաշունչ հոտ քաղուն տարգոնական նժուգին նախ մուրէ„ (Անդ. էջ 87). առաքեմ տալ տրամակայեալ յինքեան յոքնաբեղուն տարգոնական կնիք յազնուականէն Արաբացւոց, յապարանէն արքունի„ (Անդ. էջ 103):

Թէ Հայերէնի մէջ դաշտ բառը՝ շինութիւն, չէն տեղ կը նշանակէ, պէտք չունինք ապացուցանելու, այնչափ յայտնի է Հայերէնագէտներու. միայն բաւական կը համարինք յիշեցնել Մագիստրոսի վկայութիւնները. “եւ ոչ դաշտն՝ անապատ փոխել” (Մկս. էջ 85), “(կրօնաւորաց [= ճգնաւորաց] կայեանք յանապատս բնաւորեցան), եւ դու զի՞արդ զանապատն դաշտ վարկանիս, (Անդ.). “յաւանս եւ ի գիւղս, յանապատս եւ ի դաշտս” (Անդ. էջ 65)։ Ուրեմն այս 4—5 թուերու իմաստն ինքնին յայտնի է։

“Լուսաշաւիղ” ուղեւորութեան ճամբայ պիտի ցոյց տամ ի Թագաւորականն պալատ”, այսինքն՝ “ի ճեմարան”։

Ունինք վերջին երկու վկայութիւններ այս իմաստին ճշմարտութեանը համար՝ ի Մագիստրոսէ. “(Պօղոս) նշանակէ բարձրագոյն խսկ եւ հրաշալի եւ զուարճութիւն մերոյ կենցաղական ճանապարհորդութեան իբրու ի քաղաք կամ — NB. — յապարանս արքունի” (Մկս. էջ 149)։ “Թագաւորական պալատն”, կամ “ի տաճարին թագաւորականն” (Վարք եւ Վկայ. Վինետ., Հտ. Բ., էջ 500) կ'ըմբռնենք, ի հարկէ, իբր ճեմարան, ապա թէ ոչ բոլորովին անիմաստ կը մնար Մագիստրոսի փոխաբերաբար նկարագրած գեղեցիկ նմանութիւնը։ Կը յիշեցնենք տարախոհներու՝ այս թուին մէջ մեր յիշատակած մէկ վկայութիւնը. “եւ կամիմ զի եւ դա յարքունիս

քոյդ քարգոնոսական ապարանի առկայացեալ արասցէ քեզ ճեմարան,,. Նոյնպէս՝ "քեզ այսպէս վայելէր նագաւոր եւ յայսպիսի պողոտան ճեմել,, (Մկս. էջ 41): Ճեմարանն[1] կը գտնուէր նաեւ յարքունիս, ուր թագաւորազունք՝ ընդ հսկողութեամբ հմուտ անձանց կ'ընէին իրենց ուսումը. "Ի տէրունեան ճեմարանիս զարգանաս„ կ'ըսէր Մագիստրոս իւր Վահրամ որդւոյն (էջ 235), եւ նոյն իսկ ճեմարանի մէջ աւանդուած գիտութիւնը՝ ճեմարան կ'անուանէ Մագիստրոս (էջ 78):

Երկրորդ վկայութիւնն է դարձեալ նոյն ինքն Մագիստրոսի, որ կը մեկնէ պատճառները թէ ինչու այսպիսի դժուարակնճիռ — հանելուկներով կը չարչարէր զԿիրակոս.

---

[1] Զոր Լսարան ալ կ'անուանէ Մագիստրոս (էջ 83). "այլ եւ ոչ ի լսարանն մուծանել„, "Մի որ անկատար ի քառիցն ենթակայէ մտցէ ի լսարանն,, (յգ. ἀκροατήριον) (Մկս. էջ 9): Իսկ Դ. Անյաղթ Համալսարան կ'ըսէ այս լսարանին. "Պղատոնի վերայ իւրոյ Համալսարանին [ἀκαδήμεια կամ ἀκαδημία, որուն նոր յն. կ'ըսեն Πανδιδακτήριον] մակագրեաց, Աներկրաչափն մի ներքամտեսցի,, (Դ. Անյ. Վենետ. էջ 128 = "աներկրաչափական ոք մի ներամտեսցէ„ կ'ըսէ Մագիստրոս, էջ 9). "առաջի իւրոյ Համալսարանին մակագրեաց,, (Դ. Անյ. էջ 192). "Քսենոկրատէս եւ Արիստոտէլէս Պղատոնի էին աշակերտք, որք եւ յետ նորա փոխանորդք եղեն Համալսարանին նորա. իսկ արդ Քսենոկրատէս արար զստոյիկեան հերձուածն, իսկ Արիստոտէլէս զճեմականն (1 օր. ճեմարանն)„ (Նոննոս էջ 35): Տեղս չէ ճեմարան եւ Համալսարան բառերու յատկացուելիք բառին վրայ խօսելու. ի հնումն ἀκαδήμεια երկուքն ալ կը նշանակէր:

վասն զի Սոկրատայ ճեմարանին սովորութիւնն այս է, այսպիսի "կրթութիւններով կը վարժեցնէին համբակները." "Մի՛ ոք, կ'ըսէր, զմեզ աղարտել նախատանս կասկածել վարկցի կարկատել ի վերայ մեր, սակս նորագոյն լսել մեզ կամ աւելի ինչ, քանզի է ճեմարանին սոկրատային այսոքիկ սովորութիւնք եւ կրթութիւնք մանկանցն հռետորական,, (Մկս. էջ 125—6):

6. *Մախիզ = անյայտ:* Մեկնուած է արդէն. տ. հտ. 4 եւ 13, թիւ 10:

7. *Մեհենջանք = զարդարանք:* Միայն Ագր. կը յիշատակէ այս բառը. կը լռեն Երմ. ՍՌ. եւ ՀԲռ.: Անծանօթ բայց գեղեցիկ բառ մը, որ կազմութեամբն ու նշանակութեամբը կը յիշեցնէ մեհեանդ եւ ապարանջան: Մտադիր կ'ընենք մի նմանաձայնութիւններու. "զի մ՛ մախիզ մնացէ մթերեալ մեհենջանք" (թիւ 5—7):

8. *Զանձեալ = ժողովեալ, լամբեալ:* Կը յիշատակէ միայն Ագր. այս նշանակութեամբ, իսկ Երմ. ունի՝ յօյնջել:

9. *Աստուստ = աստէն:*

10. *յՌեստոփանէ = յԱրիստոփանեայ:*

Ահաւասիկ՝ գաղղ. բառով այն clouն, որ զմեզ դրդեց իբրեւ երկրորդ շարժառիթ՝ ինչպէս յիշատակեցինք վերը, այս ուսումնասիրութեան փորձին ձեռք զարնելու: Արիստոփանէս կատակերգակին անունը՝ "կերպս

ի կերպս„ եղած՝ պահուած գուշակեցինք Մագիստրոսեան այս նամակին մէջ, ո՛չ թէ միայն անկէ փոխառեալ իմաստներուն մէջ (որոնց ուշադրութիւն հրաւիրեցինք այս գրութեանս ընթացքին մէջ), այլ առաւելապէս ա՛յն պարագային պատճառաւ, որ նոյն իսկ անուամբ կը յիշուէր Արիստոփանէս՝ Մագիստրոսէն։ Ի՞նչպէս հասանք այս եզրակացութեան։ Ձեռագիրներու եւ տպագիրներու աղճատեալ ձեւերն էին որ զօրացուցին մեր միտքը՝ մերժելու ամէն ընթերցուած եւ ամրապէս կառչելու “Ռստոփանէ„ ձեւին։ Նոնոս էջ 62՝ ինչպէս ըսինք արդէն, ունի այս կատակերգակին անունը, զայն պահած է՝ Արիստոփանէս (իսկ մէկ պարբերակին մէջ՝ Արիստոֆանէս) ձեւով.

ՆԲ. ունի՝ ռեստ թփանէ,
Անտ. „ ՝ ռեստթփանէ,
Վիեն. „ ՝ ռեստփանէ,
Մկս. „ ՝ Ռիսափանէ,
Էմ. „ ՝ ռեսոփանէ,
„ տարբ.՝ ռեստւփանէ եւն.

Արդ ո՞ր ուշադիր ընթերցողը չի տեսներ Ռեստոփանէ անունն հոս. միայն Ա = A զեղչուած է՝ հաւանականագոյնս՝ զԿիրակոս (եւ զմեզ) շփոթելու համար։ Այս զեղչումն հասարակ է արդէն շատ մը ծանօթ անուններու մէջ (Ռստակէս, Ռաստոմ, եւն եւն)։ Բայց չենք գտներ յ-բացառական հոլովա-

կերտ Նախդիրը, զոր աւելցուցինք իմաստին ամբողջութեան համար։

Կայ կարեւորագոյն խնդիր մը. իբր “յԱրիստոփանէ ձանձեալ (առնուած) զար-դարանքներ (հոս) մթերեալներն„ մենք չգտանք ամբողջովին։ Բայց նախ մեզի չ՚ըսեր Մագիստրոս թէ ամբողջապէս հատուածներ ժողված առած ըլլայ Արիստոփանէսէն, այլ անկէ փոխառած “մէհենչանք,,ներով = զար-դերով կազմած է՝ “այս . . . դրամանական պա-ղատագութիւնը„։

Երկրորդ. Արիստոփանէսին բոլոր երկասի-րութիւններն հասած չեն մեզի, հազիւ 8—10 կատակերգութիւններ, որոնցմէ՝ վեր ի վերոյ ընթերցմամբ, քիչ շատ “զարդա-րանքներ„ տեսանք “մակակիտուած„ այս “Գամագտականին„ մէջ։ Ժամանակը կարելի ընէ թերեւս ամբողջովին — Մագիստրո-սի՝ տողառտող “առնէրնէր,,ով ապացուցա-նելու իւրաքանչիւր անհատ զարդը։ —

11. Ներառոգեալ = ասացեալ, ու կոչի [“մականուանեալ,,]։ 11րդ հատուածին, 12 թուին մէջ “առոգանալ, մեկնած ենք իբր զօրացեալ (= անշուշտ առոյգ բառէն), բայց առոգել կը նշանակէ նաեւ ջրել, ոռոգել, ոռոգանել։ Ներ մասնիկն բոլորովին աւելորդ էր հոս, բայց ի՞նչ ընէ Մագիստրոս, Ներերու դարերու մէջ ծնած ու սնած է, եւ երբ քիչ մը բնական լեզուէն խոտորելով բարձր գրել ուզէ. “Անյաղթեանց„ պէս կը բռնադատուի,

կարծես, Նէրերէ — Ներ-արկուելու ... «ոչ դանդաղիմք Նէր——կան հրաշաքանութեամբ մակագրել» (Մկս. էջ 100)։ Բացէք Մագիստրոսի թղթերն եւ իւրաքանչիւր էջին վրայ՝ պարզ ու բնիկ հայերէն բառին գլխուն կպած պիտի գտնէք Նէր մը... Նակ մը... տըտ, տար, տա, Ճող, տտոր, գէր, Շար են են, երբեմն երկուքը կամ երեքը բառի մը վրայ միացած, եւ այս աւելորդ մասնիկներով ծանրաբեռնուած «ցեխ ու գոեհ» լեզուն՝ իբր ոսկէ հաւասարապէս կը ծախուէր երբեմն լեզուական — վաճառանոցը ... ։

12. *Շափրակազգեաց* = *պսակեալ*, *այսինքն*՝ «*պսակաւոր քանաստեղծ*»։ Արմատն է Շահրակ զոր կը նշանակեն Աճռ. եւ Երմ. իբր «Ազակ, Շարդ»։ Տարակոյս չկայ որ պարսկերէն կը հնչէ բառը, բայց ո՞ր արմատէն, մեզի անծանօթ կը մնայ. գիտենք միայն شاهپر, որուն նշանակութիւնն է «մեծ փետուր»։ Փետուր եւ պսա՞կ ....

Անմիաբան են ձեռագիր ու տպագիրները.

Նբ. ունի՝ շամփրակազգեաց,
Մկս.՝ շափրաղազգեաց,
Վիեն.՝ շաֆակազգեայ,
Անտ. եւ Էջմ՝ շափրակազգեաց, ճշգագոյնը։

13. *Բառացի* = *փառաւոր*, *հռչակեալ*։ Կազմութեան կողմանէ զարմանալի բառ մը, զոր առաջին ակնարկով պիտի փոխանակէինք ——ցի ձեւով, բայց ——ցի կը յիշատակուի

Ագր. է, Երմ. է, Հբռ. է, եւ Ցրդ դարէն սկսեալ բաւական յաճախ կը գործածուի մատենագրութեան մէջ. այսպէս. "առաւելապէս իմն կամեցեալ երեւեցուցանել (զնոսա) [illegible] առ բնաւ ազգօք (փոխանակ թշուառականագոյն աղքատութեանն)„ (Խոր. Մատեն. Վենետ. էջ 419). "արտաքին վայելչիւք (գործէ) երջանիկ [illegible]„ (Անդ. էջ 431). "փարթամագոյն երեւեալ եւ յոյժ [illegible]„ (Անդ. էջ 442). "էր այրն [illegible] յոյժ ամենայն պաճարանօք, հօտիւք եւ ծառայիւք„ (Վարք եւ Վկայ. Վենետ. Հտ. Ա. էջ 422). "Յորժամ առնիցես ճաշ կամ ընթրիս մի կոչեր զփարթամ [illegible]„. (Իրեն. ընդ. հերձ. = Ղուկ. ԺԴ. 12 նոյն խօսքը, էջ 234) եւն եւն: Մագիստրոս ալ կը գործածէ. "ասացից ինձ սխրալիս քեզ եթէ ոչ բարձրացիր ըստ մարմնոյ [illegible] գոլ„ (Մկս. էջ 205). Թէպէտ ունի եւ "[illegible] եւ փարթամք„ (Անդ. էջ 222—3). "ո՞ւր փառնակ [illegible] գեղաշուք, ո՞ւր փառանաւազ [illegible] փառասէր„ (Անդ. էջ 60):

14. *Փարաքեան* = *աղտեղի*: "փարաք = աղտեղի„ ունի Ագր. եւ Երմ.: Տարակոյս չկայ որ այս պարզ բառն իսկ Մագիստրոսի մեծ հմտութեան նշանակ է, որովհետեւ գիտէ թէ Արիստոփանէս կը ճանչցուի ի գիտնոց "հռչակաւոր բանաստեղծ„ մը, իսկ համբակներ կ'անուանեն զանիկա՝ [illegible], [illegible], այն հեթանոս կատակերգակին

թատրերգութեանց մէջ տեսնուած գարշ ու տղմաթաթաւ նկարագրութեանց եւ տեսարաններուն համար . . . . . : Ջնջելու է Էմ. ի՝ ֆարաֆէնոյն ձեւը:

15—16. Խակագոյն անխոհից անտիոցն = խակ[ագոյն] անխորհուրդ մանկանց [անչափահասից]: Թէ “ազոխից” հոս գործ չունի բնաւ եւ ընդօրինակողներու վրիպակն է, ցոյց կու տայ Նբ. ի բնագիրը, որ ունի “աղօթիցն” որ նոյնպէս անիմաստ է այս տեղս: Գաղափարողներու մտքին մէջ ծնած է ապահովաբար այս “ազոխ” բառը՝ Նախընթաց խակագոյն բառին ազդեցութեամբը: Մագիստրոս “խակագոյն, խակութիւն” բառերը միշտ “տհաս հասակի” համար կը գործածէ. օր. աղ. “չխակագոյն տիս մանկութեան եւ զախմարութիւն” (Մգս. էջ 19). “խակաբնեան անտեղեկան մտածութիւնս կարացէ չափաբերական ինչ տաղիւք եւ կամ կարկատուն բանիւք առասանել” (Անդ. էջ 24) եւն եւն: Ամբողջական իմաստին համար համեմատէ. “տակաւին խնդրես շարադրական եւ չխակագոյն խնդիրն” (Անդ. էջ 111). “առաջի մանկանց եւ խակագունեցն” (Պղտ. Տրամ. Մինովս, վենետ. էջ 18). անտիական տիոց եւ անխոհից է” (Անդ. էջ 20). “քանզի յոյժ տարախոհեցն (= անխոհիցն) եւ անտիական մտածութեանցն է բաղձումն այս” (Մգս. էջ 8). “որդի Պարմենիդայ համբակ գոլով եւ մինչդեռ տակաւին յան-

դէլան խոլ-բեան ալ յուբելու հոսեալ (= անչափահաս)" (Անդ. էջ 123). "յիմուռ անդէլանն ելով տիս" (Անդ. էջ 9). "յան-դէլան մանկանցն ծաղր լեալ" (Անդ. էջ 30). "մինչ տակաւին յանդէլան տիս . . . ." (էջ 235). "յանդէլան տիսդ մարդ ելոյ" (էջ 107)։ Պարզապէս աւելադրութիւն են հոս անդէլան եւ խոլդոյն բառերն, երկուքն ալ գրեթէ մի եւ նոյն իմաստն ունին[1].

Համոզուած ենք որ տարակոյսի ստուեր մ'անգամ չ'ընդունիր այս մեկնութիւնը. բայց ի հակառակէն, ուղխէսն կամ ուղջնէսն ուղիղ համարողներ (եթէ այլ եւս կան), հաճին մեկնել այս հատուածը՝ ուղղու գաղափարով։ Մենք անկարելի կը համարինք.

17. *Տրամանական* = *տարաժամ* [*անյարմար*] (?) Միայն այս հատուածին մէջ կայ այս անստոյգ բառը. բառագիրք ու մատենագրութիւն կը լռեն։ Մենք կը փափաքէինք տեսնել կամ դրամական (որ կը

---

[1] Այլեւայլ բարդութեանց եւ դարձուածքներու մէջ խոլ բառը միշտ այս նշանակութեամբ կը գործածուի ուրիշ մատենագիրներէ ալ. "խոլամտական (= խակ մտքի) խորհրդոց" (Մկս. էջ 17). "քանզի մանուկ տղայ էր եւ խոլ" (Սեբէոս. Կ.Պ. 1851, էջ 69). "խոլաբերքն ձայնակցութիւն իմոյ մտացս. (Ստ. Օրբելեան, Պարիս, 1859. Հտ. Բ. էջ 254). "երիտասարդական խոլ-բեան" (Թ. Արծր. Միջագ. 1852, էջ 280)։ Ներքին եւ արտաքին այսչափ վկայութեանց վրայ հարկ չենք տեսներ յաւելուլ՝ որ դասական հայերէնի ալ յատուկ է այս խոլ բառը։

գործածէ Մագիստրոս էջ 131) կամ տա-
տանական (էջ 237)։

Տրամանականի մէջ կը կարծենք տեսնել ՝ամանակ = ժամանակ. բառը, բայց դէ կը մնայ անմեկնելի։ Տրամաբանական-ի կամ տրամադրականի փոխելը՝ կրնայ մեր մեկնութեանը վնասել, բայց բոլորովին անընդունելի չէ։ Եթէ տարամանական ըլլար, դիւրաւ կը մեկնուէր, քանի որ երկու տող ետքը տարաժամ գործածած է Մագիստրոս։ Եթէ՝ Մագիստրոսի ըսածին պէս, "Հիւանդական զիմս իմացի տրամադատութիւն" (Մկս. էջ 131), այսինքն "մեր դատումը տկար գտնէ յայսմ" ընթերցողը, մենք մեղադրելի չենք, վասն զի հարցական նշան մ'աւելցնելով՝ իրաւունք ունինք Մագիստրոսի արտուտին հետ կրկնելու, "Որքան խորեմ, ղայն ասնեմ" (Մկս. էջ 13)։

18. *Տղմատիպ անվարժից = Թշուառ անհրահանգելոց [եղկելի անվարժներու]*՝ սեռական հոլով։ Ոմանք՝ Նր. Վիեն. ունին՝ տղմատիպ, ոմանք՝ Մկս. Էմ.՝ տղմասոյզ, իսկ Անտ.՝ տղմատիպան։ Թէպէտ տղմատիպ, եւ տղմասոյզ բառերու տարբերութիւնը շատ մեծ չէ, բայց Մագիստրոս միշտ տղմատիպ կը գործածէ։ Ճիշտ մեզի պէս ըմբռնած է այս երկու (տղմատիպ եւ անվարժ) բառերու շարակցութիւնը՝ ՀԲռ. իրմէ անկախ ջանացինք իմաստ մը հանել այս բառական խրթին տողէն, եւ երբ՝ ըստ պատահման, նոյն բառա-

գրոց մէջ՝ "տղմատիղ անվարժ„ շարաբարդութիւնը տեսանք, բնական գոհունակութեան զգածմամբ մը՝ աւելի հաստատուեցանք մեր մտաց մէջ, թէեւ այսպիսի զգածումներ՝ քննադատական խուզարկութեանց մէջ նկատողութեան արժանի չըլլան . . . ,

Մագիստրոս այս տղմատիղ բառը շատ անգամ գործած է. "տղմատիղ կենցաղոյս„ (Մկս. էջ 82). "ի թանձրագոյն մարմնոյս տղմատիղ ոչ քարշիցեն„ (Անդ. էջ 19). "ի կենցաղական տղմատիղ ծովածուփ ցնորից ի բաց կալ„ (Անդ. էջ 89, 100). "մի զժամանակեանս տղմատիղ եւ անարգ . . .„ (Անդ. էջ 109). "ի տղմատիղ տաղտկալի մեղկեալք եւ ըմբռնեալք ի կարիսն անարգութեան„ (էջ 178) եւն եւն։

Իսկ անվարժ բառը կայ էջ 230 այսպէս. "եւ յանվարժից իմաստից իմաստասիրութիւն ուսեալ„, "անհմուտ իմաստունները„՝ որոնց դէմ բնական հակակրութիւն մը ունի Մագիստրոս, կը գոռայ. "տղայական եւ անիմաստաբար վարժմամբ իբրեւ զիմաստուն գոլ կարծէք զձեզ„ (Մկս. էջ 134), եւ գիտենք որ այս "կարծրակուռ„ նամակին պատճառն ալ այսպիսի "տղմատիղ անվարժ„ մըն է։

19. *Ցղայական տատանումն = մանկական տանջանք* [տաղանդան = ձգձգում]: Այս երկու բառերը լաւ ըմբռնելու համար, պէտք է ուշադիր ըլլալ, որ հին դասականներն՝ (= տես

յաջորդ թիւը, եւ մանաւանդ հատուած՝ 13, թիւ 3.) իրենց խնամոց յանձնուած տղաքը շարունակ կը «շարժէին, կը տարուբերէին», որպէս զի կրթուին։ Արդէն Պղատոնի վարդապետութեան մէջ կայ այս դրութիւնն, այսինքն «շարժելով կրթելը» (տես Պղատ. Տրամ. Մինովս, վենետ. էջ 225), ուր կ'ըսուի. «եւ զայս ինչ այսչափ յայտնեն կամողին՝ ուսուցանել զի ամենայն մարմինք ի ձեռն տատանմանցն (= տատանմանցն) իսկ եւ շարժականաց շարժելով՝ անաշխատ ամենեցուն լինիցին»։ Բայց կը շարունակէ Պղատոն իւր խրատը. «եւ զտիտանսն (= դայեակ) հարկեմք տանջելով օրինօք՝ զմանկունսն առ ագարակս եւ առ տաճարս եւ կամ ընտանիս՝ միշտ բերել, մինչեւ բաւական լինիցին եւ հնարաւորք լինիցին կալ կանգուն» եւ մինչեւ բանականին իսկ գործածելու համար՝ զօրաւոր ըլլալու են դայեակները, եւ ոչ միայն սնուցիչ (Անդ.)։ «Տղոց այս տարուբեր շարժումն» կ'երեւայ թէ հին Յունաց քով մեծ կարեւորութիւն ունէր, վասն զի Պղատոն նոյն իսկ կը պահանջէ որ — գիշեր ու ցերեկ ըլլայ այս շարժումը եւ «բնակել՝ եթէ հնար էր, որպէս միշտ շարժելով, որպէս նաւ ի վերայ մկանաց ջուրց» (Անդ. էջ 226)։ Եւ նմանութեամբ մըն ալ աւելի որոշակի կը յայտնէ իւր միտքը. «քանզի յորժամ կամիցին ննջեցուցանել զդժուարանինջսն ի մանկանցն, մարքն ոչ հանդարտութիւն ածեն մատուցանեն, այլ զներ-

հակն՝ կուրետեանն առ գիրկսն մերթ ճօճանելով (= տատանելով), եւ ոչ լռութիւն այլ զերգիչսն . . . այսպէս կուրետեան պարօքն եւ երաժշտովք վարելովք„ (Անդ. էջ 227)[1]։

Այլուստ ծանօթ է Մագիստրոսի այս տիտան - դայեակներու պաշտօնը, զոր կը յիշատակէ "ռամիկներու առակներու„ մէջ (Մկս. էջ 143). "եւ ոչ դայեկօքն եւ դէ-տանօքն զմանկունս (= մանկանց) թոյլ տան զի թուլասցին„։ Թէ այս "տատանումն„ իբր "տարուբերանք„ իւր խստութեամբը՝ իրա-

---

1 Մեր մայրերու "օրօր„ներու՝ եւ մանկապարտէզներու փոքրիկներու միջև "շարժական„ կրթութեանց նշանակութիւնը չհասկցողներ, կարդալու են Պղատոնի այս գլուխը։

A propos! Պղատ. Տրամախօսութեան այս հատորին մէջ՝ էջ 227, Հրատարակչին ծանօթութեան մէջ κορυβαντίαν բառն ու նշանակութիւնը չկրցանք ըմբռնել, վասն զի նախ՝ յունարէն κορυβαντίαν բառ չկայ, այլ պիտի ըլլայ ինչպէս բնագիրն ունի κορυβάντων = կորիբանդաց, որոնց պաշտօնն էր կոտորելով կերել տղաքը, ինչպէս նաեւ կուրետներու պաշտօնն էր զէնքերը շաչեցնել. համեմատել "կարգեաց (Հռէ՝ մայր Արամազդայ) առ տղայն զկորիբանդս (1 որ. զկորեւբանտն) եւ զկուրետսն՝ կաքաւել եւ զինու թնդիւնս առնել . . . զի մի գիտասցէ Կրոնոս (Հայր Արամազդայ) զթաքուստ մանկանն եւ առեալ կլանիցէ զնա„ (Նոննոս, էջ 3–4)։ Երկրորդ ի՞նչ կրնայ նշանակել հոս՝ Հրատարակչին իբր "կոկոզել կոկոզանալ„ տուած նշանակութիւնը. κορυβαντιάω բայը կը նշանակէ "ոգեւորուիլ, մոլիլ, կորիբանտներու պէս յափշտակուիլ, զմայլիլ„։ Արիստոփանէսի (Նոննոս՝ 62) հետեւող Մագիստրոսի բառախաղերն՝ որով բառերն իրենց բնական ձեւերն ու նշանակութիւնները կը փոխեն, պէտք չէ հետեւողներ գտնել. . . . . ։

կան տանջանք, տուայտանք կ՚ըլլայ, կը յիշատակուի Մագիստրոսէ. "զայսպիսի տեսեալ աղէտս դարականաց տատանման (= ի վերացեալն մտօք),, (Մկս. էջ 121). "տակաւին տոկաս ի քումդ դատանական (տպ. դատանական) կենցաղում (քշտաց վրայ կը խօսի)" (Անդ. էջ 147) "քանզի ի սմա ասէ՝ Հերմես ակնարկութեամբ (mit den Augen blinzelnd)՝ դադանել զՂոմպոս (= Արիստոփ.՝ Ղամպոն) (Մկս. էջ 207.) "յուսացուցանէ զմեզ յայնպիսում դատանական տեւել կենդանութեան" (Անդ. էջ 121):

20. *Տիտանեաց մանկասպանիցն* = *Մանկասպան դայեակներու:* Նախընթաց թուին մէջ մեր գրածները կը մեկնեն ըստ բաւականի թէ որոնք են "մանկասպան տիտանները": Բայց կան ուրիշ տեսակ դիտաններ ալ. Մագիստրոս կը ծանօթացնէ մին. "Ոմն անուն Պեռտոկլէս ի Պագնասոս տօնէր Դիոնեսեայ ի տաճարին Ապողոնի որդւոյն Արամազդայ, իսկ ի տօնելն (= ձօնել?) երգէր օրհնութիւն Դիոնեսեայ եւ անէծս՝ Տիտանեաց, իբրու թէ պատճառ եղեալ նոցա (այսինքն՝ տիտանեաց) Դիոնեսեայ յօշման, զոր մինչդեռ տակաւին մանուկ դայեակն էր, խաբմամբ պատրանաց՝ (յ)այսպիսի տագնապ հասուցանէին,, (Մկս. էջ 233), զոր գրեթէ նոյն բառերով կը յիշատակէ եւ էջ 79, միայն յիշատակելով եւ "Տիտաններու շանթիւ տանջուիլը": Այս դիցաբանական զրոյցին ծանօթ է Մագիստրոս եւ

Նոնոսէն (էջ 75)։ Այս մանկակոտոր ողբայասպանութեան ուրիշ մէկ դէպքը կը յիշատակէ Նոնոս էջ 8 եւ 80։

14—20 թուերու բովանդակութիւնն է.

«Խակ անխորհուրդներու անյարմար այս տաղասացութիւնը՝ թշուառ ոգէտներ՝ մանկասպան դայեակներու ողբական տանջանքներ կը համարին։

21. *Տխրական տառի որակը = տխրեցուցիչ խօսքի տեսակներ:* Տխրական տառ կը հասկնանք իբր՝ տխուր խօսք, ինչպէս կայ «մարգարէական տառ». «բարբառել բան տխրական եւ սգաւոր» (Հբռ.) Մագիստրոս ունի այս բառը էջ 121 «տխրական պատահումն» ձեւով։

Որակ կամ որակութիւն՝ իբր գոյացութիւն, տեսակ, նիւթ եւն. շատ սովորական է այս դարերու հայերէնին։ Մագիստրոս՝ հաւասարապէս երկուքն ալ կը գործածէ. «այսպէս որակութեանս ախտի թանձրագունից մարմնոյ եւ մաղձոյ սպիտակ որակի հասեալ» (Մկս. էջ 68). «զնորայն գովեստ անդանդաղ ի մէնջ իրաւացի ընկալցի որակութեանց անանջատ ախտ» (Մկս. էջ 51)։ Իսկ երբեմն իբր էակութիւն, էութիւն՝ հակադրութեամբ ձեւի. «տեսանեմք որակութիւն եւ ոչ ըստ ձեւոյն» (Անդ. էջ 71), թէպէտ յորակութենէ կամ ի տրամադրութենէ ախտի» (Անդ. էջ 81). «այժմ տուր ինձ առ այս սուղ ինչ

իմաստասիրել ուրախութիւնք ի քեզ (= զու-րախութեանց)„ (Անդ. էջ 204)· որուն բայն ալ ունի Մագիստրոս "եւ յարենէ ինքեան ուրախացուցել զնա ատրորական„ (Մկս. էջ 79)։

22. *Տարաժամից* = *հեղգացելոց* [*դանդա-ղամտաց*]։ Միայն Վիեն. կը խոտորի միւս ներէն եւ ունի "տարաժամեցին„։

23. *Ստորասութիւն* = *մեկնութիւն*։ Ստորասութիւն բառին ծանօթ նշանակութիւններուն երկրորդը կ'առնունք, որ է մերժութիւն, ճօցատրութիւն, լուաստորութիւն, յն. ἀπόφασις։ Հբռ. ունի՝ յն. բառագիրքներուն անծանօթ բառ մը՝ ὑπογορεύσις)[1]։ — Այս նշանակութեամբ կը նոյնանայ ստորասացութիւն բառին հետ։ Մագիստրոս ունի (էջ 95) "ոչ կամիմք սակս տուշնաքեայ ստորասութեան„, հոս պէտք է հասկնալ՝ "համառօտ մեկնութիւն„, վասն զի քիչ մը վերը կ'ըսէ. "․ ․ ․ զպատճառ հնգեկին ասասցուք, եւ զայլսն թողցուք, զի երկարատոյն գործէ զա-ռասութիւնս„․ այս իմաստով գործածուած է (էջ 122)․ "քանզի սիրելի է քեզ միշտ ստորասութեամբ շատանալ„․ իսկ էջ 110՝ ունի ստորասացութիւն․ "այսոքիկ էին

---

[1] Պէտք ըլլայ արդեօք՝ ὑπαγόρευσις, չենք հա-մարձակիր հաստատել թէ՛ ուղղագրութեան, թէ՛ չեչտին եւ թէ՛ իմաստին համար։

քոյն տղայութեան մանկական անտիութեան կամ անտեղեկութեան„ (Սերակոսին կ'ըսէ)։

24. Անտինել անվարժիցն = զարհուրիլ (?) անվարժներու: Չկայ այսպիսի բառ մը բովանդակ (Ժողէ ծանօթ) հայ մատենագրութեան մէջ, եւ սակայն առաջին ակնարկութեամբ շատ ընդունելի ձեւ մը ունի այս բառը։ Եթէ "անփիտել„ ըլլար, դիւրաւ կը մեկնուէր։ Ստիպուած ենք զարհուրէլ նշանակութիւնը տալ՝ հարցականով մը, իբր ենթադրական, բայց ոչ շատ անգոսնելի։ Դրդուած ենք այս կարծիքն ունենալու Պղատ. Տրամ. Մինովս. (էջ 228) մէկ հատուածէն "․ ․ ․ ․ իբրու ամենայն հոգի ընդ զարհուրանօ ի միասին գոլով է տղայութենէ, մանաւանդ թերեւս զարհուրեալ սովորեսցի լինել. եւ զայս ինչ ամենայն որք թերեւս ասիցէ զանգիտութեան կրթութիւնն եւ ոչ արիութեան„։ Այս մեր՝ պարզապէս ենթադրութիւնը, կարծես հաստատել կ'ուզէ Մագիստրոս "անվարժասէր եւ հեղգից Ժողէեալ մանկանց„ (Մկս. էջ 237) խօսքովը, եթէ առնունք Ժողէէն (է ընդդութենէ [Ոսկ. Պւղ. Ա. էջ 89]) նաեւ իբր արդիւնք վախի եւ սարսափի։ — —

Այս վերջին հատուածին մնացեալ բառերը մեկնութեան չեն կարօտիր։ Ուրեմն 21—24 թուերու իմաստն ալ այսպէս կրնանք կազմել. "(Այս . . . տաղասացութիւնը . . . կը

համարին) դանդաղամիտներու [համար] տխրեցուցիչ խօսքեր [ու տեսակներ], շատերու՝ մեկնութեան մրցումներ, անվարժներու՝ սարսափ, տգէտներու եւ հեղգացեալ ծոյլերու՝ ձանձրոյթ,,:

---

Հասանք ''Գամագտականին,, վերջին բառին: Բայց վերջակէտ չդրած պէտի ուշադիր ընենք ընթերցողն՝ այս վերջին հատուածին բառախաղերուն: Տրամանական բառէն սկսեալ՝ բառերու մեծագոյն մասը Տով կը սկսի, եւ Մագիստրոս նմանաձայնութեամբ սկսաւ եւ նմանաձայնութեամբ կը վերջացնէ այս զարմանալի նամակը: —

Մեր վերակազմած բնագրին վրայ աւելի որոշ գաղափար մը տալու համար՝ ամբողջ նամակն յառաջ կը բերենք, համեմատելով Պր. Կոստանեանցի բնագիրը մեր կազմածին հետ, եւ գրաբարի հասկացողութեան դժուարութիւն ունեցողներու դիւրութեան համար [illegible] աշխարհաբարի կը թարգմանենք:

---

| Գր. Կոստանեանցի բնագիրը. | Մեր վերակազմած բնագիրը. |
| --- | --- |

1.

| | |
| --- | --- |
| Գամագտական գեղանամ շոհա-<br>ցեալ՝ քեզ յայղմ պատահեալ տաղի,<br>տարակոյս տատանական տրոհել զտար-<br>բերումն կասկածանս՝ տորքանելով վեւե-<br>ռագոյն իմն ածեալ, լպրծական փայա-<br>ռութեան անկառուցական վազից ան-<br>սիթեցք: | Գամագտական գեղազանամ շոհա-<br>ցեալ՝ քեզ յայղմ պատահեալ տաղի,<br>տարակոյս տատանական տրոհել զտար-<br>բերումն կասկածանս՝ տորքանելով սեւե-<br>ռագոյն ի մի ածեալ, լպրծական փայա-<br>ռութեան անկառուցական վազից ըն-<br>թացք: |

Թարգմանութիւն արդի հայերէնով ըստ իմաստին։ Այս նամակիս մէջ քեզի հետ կռուելով՝ յաղթական կը հանդիսանամ. շատ մը այլանդակ կասկածներդ կը փարատեմ. իբր լպրծուն քարի մը վրայ՝ անհաստատ ու սայթաքող քայլերդ՝ լաւ մը սորվեցնելով, կը հաստատեմ։

2.

Բաքովական աչառութեամբ փառագրական պուետեալ տարակացուցանեմ. զի տարփացիս տարախոհ, քանզի տրամաղատական իմ տախտակ տոգորեալ վարժ խուզման անխոհի, քանզի կոպանեալ ծխողնի :

Բաքովական աչառութեամբ փառագրական պուետեալ տարակացուցանեմ, զի տարփացիս տարախորհ. քանզի զտրամաղատական իմ տախտակ տոգորել՝ անխորժ խուզման անխոհի, քանզի կոպանեալ ծղխնի :

Թարգմանութիւն: Բազկիս զօրութեամբը շարագրելով կը բանաստեղծեմ, [եւ զքեզ] կը շփոթցնեմ, որպէս զի տգիտաբար կարօտ մնաս. վասն զի այս իմ իրաւացի հատուածս հասկնալը՝ քննողին համար (ալ) դժուարին ու անըմբռնելի է. ինչու որ՝ [մանուածապատ] դարձուածներով կը մոլորցնէ [կը շուարեցնէ]:

3.

Իսկապէս իրածել եւ իրողնաբար ժտել՝ ժամարունակ զօշուտ, զի զեղչեալ

Իսկապէս իրածել եւ իրողնաբար ժտել՝ ժամարունակ զօշուտ, զի զեղչեալ

| | |
|---|---|
| զետեղի. եւ ափու եկն քեզ եկեսիկէն, սակայն ոչ ետեկնեսցիս. Տարազատ ըստխողղ երբեմն մեզ պատահեալ՝ որոծեալ սուղ: | զետեղի: Եւ ափու եկն քեզ եկեսիկէն, սակայն ոչ ետեկնեսցիս: Հարազատ ստխոնղ երբեմն մեզ պատահեալ՝ որոծեալ սուղ: |

Թուրքմէնաւրէն: Ըստ իմաստին խորհիլ եւ զայն իրապէս հասկնալ՝ անկարելի է, որովհետեւ ծածուկ է [անոր միտքը]: Չարչարուիս պիտի, բայց պիտի չկարենաս լուծել: Ո՛վ ճշմարիտ բամբասողդ, խոնարհեցուր [հպարտ] գլուխդ:

4.

| | |
|---|---|
| Գոզրումական զոհնաւրէն, ըստ որում ոզէ Հոմերոս, ի զէմծն ծեմարանի, ծմղծելով ծոխ առացեալ ծածանչաւէտ, այլ մեզ մակառ իմրիականն մունչ եւ, քեզ տմախիզ: | “Գոզրումական զոհնաւրէն„, ըստ որում ոզէ Հոմերոս, “ի ղէմոն ծեմարանի„, ծմղծելով ծոխառոցեալ ծածանչաւէտ. այլ մեզ մակառ իմրիականն մունչ, եւ քեզղ՝ մախիզ: |

Թարգմանութիւն: "Բազմութեան առջեւ Հրապարակաւ խայտառակ [պիտի ըլլաս]", ինչպէս Ճշտօրէն կ'ըսէ Հոմերոս սրամիտ խօսքերով գեղեցկաբանելով. բայց մեզի յայտնի է [Նամակին] խօսքերուն իմաստը, իսկ քեզի՝ գաղտնի, տարակուսական ու մթին:

5.

| | |
|---|---|
| Ոյնք ստանձնեալ ողջախոհիմ ուղփագունեալ, պատ առեցեալ յՆլաւղէն ըստամաղութեան քո ըստարուումն, ցնցեցից փաղպիական: | Ոյնք ըստանձնեալ [եւ] ողջախոհ իմ ուղփագունեալ, պատ առեցեալ յՆլողէն՝ զստատաղութեան քոյ սթարումն ցնցոտեցից փաղպիական: |

Թարգմանութիւն: Ի Հոգւոյն [սրբոյ] օգնութիւն գտնելով՝ զօրաւոր եւ լուսամիտ պիտի հանդիսանամ. [եւ] քու ստախօսութեանդ ծածկոյթը հրապարակաւ պիտի պատռեմ [զքեզ քօղազերծ պիտի ընեմ]:

6.

| | |
|---|---|
| Բախճանակ եղանիմ փաստողիդ թէրէք զթրողակութիւն տրոհիցես՝ ենթաղրեցից վճտական արգոք, յարքունս զքեզ ձգեալ եւ համոզեալ ի հուսկիցն կարծիսդ: | Բուճանակ եղանիմ փաստողիդ, թերեք զթրուշակութիւն տրոհիցես՝ ընթաղրեցից վճտական արգոք. յարքունս զքեզ ձգեալ եւ համոզեալ ի հուսկիցն կարծիցդ: |

**Թարգմանութիւն: Բծախնդիրդ կը խոստանամ՝ եթէ անպիտանութիւնդ մեկդի թողուս, [թէ] յայտնի եւ լուսաւոր խօսքեր պիտի ուղղեմ քեզի. խելահաս պիտի ընեմ զքեզ եւ յետին տգիտութենէդ պիտի ազատեմ:**

7.

| | |
|---|---|
| Մատիր դու առ մակաղրութիւնս անմոմոզական, միտելով մազոյն եւ զմա- | Մատիր դու առ մակագրութիւն անմոմոշական՝ միտելով մազոյն եւ զմակ |

կանկեալ ըզաւք առ մարզ, յորում յուզում յար արՆուն:

անկեալ ըզօք՝ առ մարզ, յորում յուզում յարաՆուն:

Թարգմանութիւն. Երկու գոց աչքերուդ թեւեր կցելով՝ անդանդաղ մերձեցիր այս գրութեանս, հրահանգներուն՝ որոնց մէջ շատ խոր մտքեր կան։

8.

Աժխորեալ արտասանեմ՝ զղատարկակեաց գիր յանգականղ, զի զոփեսցէ թառ աւրինող թինուեանղ ներղիմեա զժտեալս:

Ախորժեալ արտասանեմ՝ զղատ արկածեաց գիր յանգականղ, զի զոփեսցիս: Թառաւիր իրեՆող թինուեանղ, ներղիմեա զժտեալս:

Թարգմանութիւն. [Քու] Թշնամանքներուդ դատավճիռ՝ այս չափաբերական գրուածքն յայտնելու կ'ախորժիմ, որպէս զի մտքովդ չարչարուիս. [Ո՛վ ինք զինքդ] ի զուր փիլիսոփայ կարծողդ, մեկնէ առաջարկածներս։

9.

| | |
|---|---|
| Գեստրաս զրէ՛ իցես խոռթաքար եռանկիւնեայ աւղաՀատեալ կառաչմամբ. | Գեստրաս զրէից ես, խորղապար եռանկլինեաց օղաՀատեալ կառաչմամբ: |
| Հիկէն զեստրաս Հոպտեալ ըմբարՀակեալ կոկոզանս, սակայն ոչ մակթեւիս ապուսեալ միայն աճիւնիցն ծաւքման: | Հիկէն զեստրաս Հոպտեալ ըմբարՀակեալ կոկոզանաս. սակայն ոչ մակթեւիս՝ ապուսեալ միայն աճիւնիցն ծաւքման: |

Թարգմանութիւն: Եղանկիւնաձեւ պարելով ու կրկնալով գաղթող կռունկներու որսորդ ես: Որսորդի պէս կը ծածկուիս եւ ազատ համարձակ կը ջարդաբանես. բայց պիտի չյաջողիս եւ [քթիդ բերնիդ վրայ] թաւալգլոր գետին պիտի փռուիս:

10.

| | |
|---|---|
| Իրազեկ զինէն ծանեայ, զի լիցիս ի բաշ ի կարծրակուռ առասութեան | Իրազեկ զինէն ծանեայ, զի լիցիս իբալի [ի] կարծրակուռ առասութեան, |

| | |
|---|---|
| իբր ի [Թ]նատէ եւ ի կէս դակողակէ վարատեալ անհպելի համբղեռ կարծեցեալ: | իբր ի կենատէ եւ ի կեստայ կողակէ վարատեալ, անհպելի համադեռ կարծեցեալ: |

Թարգմանութիւն: Հաստատ համոզուած եմ թէ՝ նետէ ու նիզակէ զարնուածի մը պէս ողբալի պիտի ըլլաս այս դժուարահասկնալի խօսքերուս մէջ, [դուն որ] անյաղթելի հակառակորդ մը կը կարծէիր ինք զինքդ:

11.

| | |
|---|---|
| Ստորոգեալ քեզ զքողոստիկոսեան փաբնակապէս ոգեցից. ոչ իբրու տարբեղուն, այլ տրամակոչ փատ ողանալ ի շորթել ի ներկայից մակացութիւնս ներում նպաստ եղելոց առ ի մէնջ առազացիս: | Ստորոգեալ քեզ սքողոստիկոսեան փաբնակապէս ոգեցից, ո՛չ իբրու տարբեղուն, այլ տրամակոչ, փատողանալ եւ շորթել ի ներացիկ մակառութիւնն՝ ներում նպաստ եղելոց առ ի մէնջ, առազացիս: |

Թարգմանութիւն: Ոչ անտեղի կերպով, այլ պատշաճօրէն՝ գիտնական անունը պիտի տամ քեզի, [եթէ] քեզի իբր նպաստ առաջարկած պիտանի մեկնութիւններն իմաստասիրելու եւ լուծելու [չափ] քաջանաս:

12.

| | |
|---|---|
| Տարփիմք ցանգ տածել եւ պատրզ-բայել եւ բուծել, զի բաղածեալ բեկտես-ցին բակտերեալ զլեզուն գնդակին ի ստաղին: | Տարփիմք ցանգ տածել եւ պատս-փայել եւ բուծել, զի բաղածեալ բեկտես-ցեն՝ բակտերեալ, զլեզուն գնդակին ի ստաղին: |

Թարգմանութիւն: Կը փափաքինք միշտ դարմանել, հոգալ ու սնուցանել, որպէս զի պատկառելով՝ բազմութեան մէջ բերնիդ լեզուն բռնես:

13.

| | |
|---|---|
| Ռատնազոյն յայսմ եռափայ ա-խորժիմ տիտանիլ ղռասիմալ յաքաքրու- | Ռատնազոյն յայսմ եւ ռափայ՝ ա-խորժիմ տիտանիլ եւ ռասիմալ յակքարու- |

թեան յարատեւանալ եւ ընծեռել ներ-
ծրաբար նեցուկ զկրթմունս եւ ոչ ծաս-
քիմ մախելով, զի մի մախ եղեալ եւ
ծիւրեալ մեղկիցիս:

թեան՝ յարատեւանալ. եւ ընծեռել ներ-
ծրաբար նեցուկ զկրթմունս: Եւ ոչ ծաս-
քեմ մախելով, զի մի՛ մախիցեալ եւ
ծիւրեալ մեղկիցիս:

Թարգմանութիւն: Քեզմէ աւելի քաջ ու հսկայ ըլլալովս՝ կ'ուզեմ սորվեցնել եւ քու յօժարութեանդ օգնելու [մէջ] յարատեւել, եւ ձրիաբար կրթել զքեզ [հրահանգներով]: Ոխակալութեամբ չեմ ընկճեր, որպէս զի [գրածներուս] անտեղեակ մնալով՝ թշուառ ու եղկելի ըլլաս:

14.

Ողիմպիական մրցանակ ուղղակի-
տեմք, զի ուռճասցիս, ելոյդ ի նիշղ ա-
հորական տոգորից տենչամ քեզ տրա-
մակայեալ փարթար զտարրումն. շա
ղապատեալ շաղաշարտի տրամաբա-

Ողիմպիական մրցանակ ուղղակի-
տեմք զի ուռճասցիս, ելոյդ ի նիշղ ո-
գորական տոգորից: Տենչամ քեզ՝ տրա-
մակայեալ փարթար զտարրումն: Շա-
ղապատեալ շաղաշար[ի] գրիւք տրա-

նիցես տնրէկովկացի զկացարդա-
կան տիւոռենական օտարավրէպ կոր-
քանիցն Արտեմական բազնին զխկու-
թեան. ոգեա մեզ սեւեռագոյն, զի ծա-
նեայց եթէ սուղ փաղփեալ քոյ, փանա-
քիմաց փարաւարթեալ զոս, զփաստ քո
վիպասանութեան :

մաքսննեսցես՝ [զ]տաւրոս — սկիւթացի
զկացրդականն տիւոռենական օտարա-
վրէպ կորքանիցն Արտեմական բազնին
զխկութենէ: Ոգեա մեզ սեւեռագոյն՝ զի
ծանեայց, եթէ սուղ փաղփեալ՝ փանա-
քիմացդ, փարաւարթեա՞լ զոս, զփաստ քո
վիպասանութեան:

**Թարգմանութիւն: Ողիմպիական մրցանակ կը սահմանենք [կը խոստանանք] որ զարգանաս, դուն որ նշանակ եղած [կը տառապիս] մրցական տագնապներու մէջ: Կը փափաքիմ որ գոնէ էական մասերն խելամտօրէն ըմբռնես: Միաշար հիւսուած խօսքերով արձակի վերածելով գրէ [ինծի]՝ Արտեմեայ մեհենին [մէջ] տաւրոս-սկիւթացի բռնաւորական հիւրասպան զոհերու պատմութիւնը [համառօտիւ]:**

15.

Սխրալի սաթերովդ վերլուծական
ողփանեմ զգուշացուցից քեզ չու

Սխրալի սաթերովդ վերլուծական՝
ողփանեմ շաւղօք զգուշացուցիչ քեզ չու

*ի քաղցնոսական նպատ. զի մի՛ մախից մնացէ մթերեալ մեհենջանք ծանծել աստուստ. Ռխափանէ ներ առոգեալ շափրաղազգեաց քառացի մի համքա կաց փարաքեան այս խակազոյն ա-զոխիցն անտիոցն տրամանական տաղա-սուլթեան տղմասոյզ անվարժիցն վար-կեալ տղայական տատանումն տիտա-նեաց մանկասպանիցն տխրական տառի, որակք տարաժամիցն եւ մրցումն ստո-րասութեան հոլովիցն անտինել անվար-ժիցն եւ տաղտկանալ տգիտացն եւ դան-դաղականն ծուլաց:*

*ի քաղցնոսականն պատ. զի մի՛ մախից մնացէ մթերեալ մեհենջանք ծանծեալ աստուստ յՌեստոփանէ՝ ներառոգեալ "շափրակազգեաց քառացի,, ի համքա-կաց՝ "փարաքեան,,, այս՝ խակազոյն ան-խոհիցն անտիոցն տրամանական տաղա-սացութիւն՝ տղմատիպ անվարժիցն վար-կեալ՝ տղայական տատանումն տիտա-նեաց մանկասպանիցն, տխրական տառի որակք տարաժամիցն, եւ մրցումն ստո-րասութեան հոլովիցն, անտինել անվար-ժիցն եւ տաղտկանալ տգիտացն եւ դան-դաղականն ծուլաց:*

**Թուրքմանո-Նիւն**: Այդ սքանչելի բացատրիչ տողերով լուսաշաւիղ ճամբայ մը ցոյց պիտի տամ քեզի՝ դէպ ի ճեմարան, որպէս զի անյայտ չմնայ հոս դիզուած՝ զարդարանքն, որ առնուած

[ժողվուած] է Արիստոփանէսէն, որ կ'անուանուի "հաչականուն բանաստեղծ", իսկ համբակ-
ներ՝ [կը կոչեն զինքը] "աղտեղի". [այս զարդարանքն է] խակամիտ անխորհուրդներու ան-
յարմար այս տաղասացութիւնը, [զոր] թշուառ տգէտներ կը համարին՝ մանկասպան
դայեակներու տղայական տանջանքներ, դանդաղամիտներու [համար] տխրեցուցիչ խօսքեր,
շատերու [համար] մեկնութեան [կարօտ] մրցումներ, անվարժներու՝ սարսափ, տգէտներու
եւ հեղգացեալ ծոյլերու [համար]՝ ձանձրոյթ:

ՎԵՐՋ

# ԱՅՍ ՀԱՏՈՐԻՆ ՄԷՋ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԱԾ ՀԱՅԵՐԷՆ ԲԱՌԵՐԸ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ. *Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց:* 1890: Էջ 85+59: Փր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., *Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց:* 1880: Էջ 50: Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց:* 1891: Էջ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Տան Դ., *Արեւելեան Հայք ի Պուքովինա:* Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Փր. –.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի:* 1892: Էջ Դ+272: Փր. 3.—

Զ. Տըմշէ Ա. եւ Գ. Փիսոն, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա:* Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Փր. 1.—

Է. Մառ Ն., *Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս:* Թրգմ. Ռ. Անոփեան: 1892:՝ 89: Փր. 1.25

Ը. Գարիէր Ա., *Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.:* Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:)* 1893: Էջ 232: Փր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., *Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի:* Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըն-կատիպ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջեննը Գւլակ. Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ՝. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 2.—

ԺԴ. Գարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատսիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 2.50

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

տագօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մենեվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խաչաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն· Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն ու քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք· (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ: Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էւ Ծ+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գելցեր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակալթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ բանասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն, Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90 Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433: Փր. 5.—

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Փր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 7.—

ԾԸ[1]. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ[2]. Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Փր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Փր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Փր. 5.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Փր. 1.—

ԿԲ. Գիւտերբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162: Փր. 2.50

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Փր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97: Փր. 1.50

ԿԵ[1]. Յովնանեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. Էջ 1-48:

ԿԵ[2]. Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911. Էջ 49-117: Փր. 1.50

ԿԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի "Գամագտականի„ ամբողջական լուծումը 1912: Էջ ԺԱ+162: Փր. 1.50

---





